## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ԼԵԶՈՒՆ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԸ



### ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

СОДЕРЖАНИЕ










## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

# ԵՎՐՈՊԱՅԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՈՒ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոն, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահությունը և **ՍՍՀՄ** Մինիստրների սովետը, քննության առնելով Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության արդյունքները, նշում են, որ եվրոպական 33 պետությունների, ԱՄՆ-ի ու Կանադայի ղեկավար գործիչների՝ պատմության մեջ աննախադեպ այդ հանդիպումը դարձավ հսկայական միջազգային նշանակություն ունեցող իրադարձություն: Խորհրդակցությունը դրեց լարվածության թուլացման նոր փուլի սկիզբը, կարևոր քայլ եղավ խաղաղ գոյակցության սկզբունքների ամրապնդման և տարբեր հասարակարգ ունեցող պետությունների իրավահավասար համագործակցության հարաբերությունների հաստատման ճանապարհին:

Պետությունների համաեվրոպական խորհրդակցությունը, որը հրավիրվել էր Եվրոպայի երկրների, ինչպես նաև ԱՄՆ-ի և Կանադայի պաշտպանությանն արժանացած սոցիալիստական համագործակցության երկրների նախաձեռնության շնորհիվ, ամփոփեց երկրորդ համաշխարհային պատերազմի կոլեկտիվորեն անհրաժեշտ քաղաքական արդյունքը, հավաստեց ուժի դիրքի և «սառը պատերազմի» քաղաքականության սնանկությունն ու վնասակարությունը: Դրա հետ մեկտեղ խորհրդակցությունը նոր հնարավորություններ բացեց մեր ժամանակների գլխավոր խնդրի լուծման՝ ժողովուրդների խաղաղության և անվտանգության ամրապնդման համար:

Եվրոպան, որը դարեր շարունակ արյունահեղ ճակատամարտերի ասպարեզ է եղել, տեսել երկու համաշխարհային պատերազմ, հիմա հանդիսավորությամբ հռչակում է պետությունների հարաբերությունների հստակ ձևակերպված սկզբունքներ և դրանով իսկ արտահայտում երկրների միջև նորմալ, բարեկամական հարաբերություններ զարգացնելու կամք:

Խորհրդակցության աշխատանքի հաջող ավարտումը մեծ, լարված աշխատանքի արգասիք է, որի ընթացքում հարկ եղավ հաղթահարել ոչ քիչ դժվարություններ: Խորհրդակցության արդյունքները այն պայմանավորվածությունների գումարն են, որոնք ձեռք բերվեցին բոլորի կարծիքների ու շահերի հաշվառման հիման վրա և ընդհանուր համաձայնությամբ: Չժխտելով գաղափարախոսության և հասարակական սիստեմների միջև եղած տարբերությունները, այդ պայմանավորվածությունները համապատասխանում են մեր մայր-

ցամաքի բոլոր ժողովուրդների շահերին: Չկան հաղթողներ և պարտվածներ, շահողներ և կորուստ կրածներ: Խորհրդակցությունը բանականության հաղթանակն է, բոլոր նրանց շահումը, ում համար թանկ են մեր մոլորակի խաղաղությունն ու անվտանգությունը:

Խորհրդակցության շնորհիվ ձեռք բերված պայմանավորվածությունները համապատասխանում են խաղաղ գոյակցության ու միջազգային համագործակցության, ժողովուրդների խաղաղության և ազատության այն սկզբունքներին, որոնք մշակել է Վ. Ի. Լենինը և որոնք սովետական պետությունը պաշտպանում է իր ամբողջ պատմական ուղու ընթացքում: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը ընդգծում են Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ականառու ներդրումը կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքական կուրսի իրականացման, խաղաղության ծրագրի մշակման և իրագործման բնագավառում, որը հսկայական դեր խաղաց լարվածության թուլացման հասնելու գործում: Նրա նպատակասլաց և երկրագնդի խաղաղության նկատմամբ անդուլ հոգատարությամբ տոգորված գործունեությունը կարևոր նշանակություն ունեցավ համաեվրոպական խորհրդակցության հրավիրման և հաջողության համար: Մեր կուսակցությունը, սովետական ժողովուրդը բարձր են գնահատում այդ ակտիվ, անձնվեր գործունեությունը և լիովին հավանություն են տալիս Հելսինկիի խորհրդակցությունում Լ. Ի. Բրեժնևի ունեցած ելույթին:

Խորհրդակցությունը բացում է Եվրոպայի խաղաղության և անվտանգության էական ամրապնդման հնարավորություններ: Նրա մասնակիցների կողմից համաձայնեցված պետությունների հարաբերությունների սկզբունքները կոչված են հուսալի հիմք ստեղծել եվրոպական միջազգային հարաբերություններից ագրեսիայի և բռնության բոլոր ձևերը բացառելու համար: Դրանք հավաստում են արդեն իրավական ուժ ունեցող այն համապատասխան դրույթները, որ ավելի վաղ մտցված էին Սովետական Միության և Ֆրանսիայի, ԳՖՀ-ի, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Իտալիայի, Կանադայի, ինչպես նաև մի շարք ուրիշ երկրների միջև վերջին տարիներս ստորագրված երկկողմ միջպետական պայմանագրերի և մյուս փաստաթղթերի մեջ:

Խորհրդակցության եզրափակիչ ակտում հռչակված պետությունների սուվերեն հավասարության և նրանց սուվերեն իրավունքների սկզբունքները, ներառյալ իրենց քաղաքական, սոցիալական, տնտեսական և կուլտուրական սիստեմները ազատորեն ընտրելու և զարգացնելու, ուժ չգործադրելու կամ ուժով չսպառնալու, սահմանների անխախտելիության, պետությունների տերիտորիալ ամբողջականության, վեճերի խաղաղ կարգավորման, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, մարդու իրավունքներն ու հիմնական ազատությունները հարգելու, ժողովուրդների իրավահավասարության և իրենց բախտը տնօրինելու նրանց իրավունքի, պետությունների համագործակցության և միջազգային իրավունքով ստանձնած պարտավորությունների բարեխիղճ կատարման սկզբունքները կոչված են նպաստելու մայրցամաքում փոխադարձ վստահության, յուրաքանչյուր երկրի ազատ, անկախ, խաղաղ զարգացման վստահության մթնոլորտի ստեղծմանը:

Եվրոպայի խաղաղության ու անվտանգության ամրապնդման գործում կարևոր դեր պետք է խաղան նաև վստահության ամրապնդման այն համաձայնեցված միջոցառումները, որոնց նպատակն է նվազեցնել զինված կոնֆլիկտների առաջացման վտանգը:

Խորհրդակցության արդյունքները նախադրյալներ են ստեղծում էապես ընդլայնելու և ակտիվացնելու եվրոպական պետությունների համագործակցությունը էկոնոմիկայի, գիտության, տեխնիկայի, շրջակա միջավայրի պահպանության բնագավառում և տնտեսական գործունեության այլ ոլորտներում, ինչպես նաև այնպիսի հումանիտար հարցերում, ինչպիսիք են փոխանակումները կուլտուրայի, կրթության, ինֆորմացիայի բնագավառում, մարդկանց կոնտակտները: Համաեվրոպական մասշտաբով համագործակցության զար-



գացումը՝ յուրաքանչյուր երկրի օրենքների և ավանդույթների պահպանմամբ
հանդերձ, կնպաստի եվրոպական մայրցամաքում խաղաղության և անվտան-
ցության հիմքի ամրապնդմանը, Եվրոպայի պետությունների, ժողովուրդների
փոխըմբռնման ամրապնդմանը: Մյուս կողմից, այդպիսի համագործակցու-
թյան զարգացումը մայրցամաքի բոլոր ժողովուրդներին հնարավորություն
կտա ավելի հաջող ու ռացիոնալ կերպով օգտագործելու իրենց տրամադրու-
թյան տակ եղած նյութական և հոգևոր արժեքները:

Միջազգային լարվածության թուլացումը ավելի ու ավելի մեծ չափով է
լցվում կոնկրետ նյութական բովանդակությամբ: Լարվածության թուլացման
նյութականացում՝ ահա այն ամենի էությունը, ինչը պետք է, իրոք, խաղաղու-
թյունը կայուն և անսասան դարձնի Եվրոպայում: Անշուշտ, շատ կարևոր է
հռչակել պետությունների հարաբերությունների ճիշտ և արդարացի սկըզ-
բունքներ: Բայց ոչ պակաս կարևոր է այդ սկզբունքները արմատավորել ար-
դի միջազգային հարաբերություններում, դրանք ներդնել պրակտիկայում և
դարձնել միջազգային կյանքի օրենք, որը ոչ ոք իրավունք չունի զանց առնել:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահու-
թյունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը ելնում են այն բանից, որ խորհրդակ-
ցությունում ներկայացված բոլոր երկրները կկենսագործեն ձեռք բերված պայ-
մանավորվածությունները: Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա
նա կգործի հենց այդպես:

Հռչակված սկզբունքների և պայմանավորվածությունների կենսագործու-
մը Սովետական Միությունից և բոլոր խաղաղասեր երկրներից կպահանջի
նոր, լուրջ ջանքեր, կպահանջի հաղթահարել այն դժվարություններն ու ար-
գելքները, որոնք հարուցում են խաղաղության և լարվածության թուլացման
գործին հակազդող ուժերը:

Համաեվրոպական խորհրդակցությունը այն ամեն դրականի արդյունքն
է, ինչ մինչև օրս մեր մայրցամաքում արվել է «սառը պատերազմից» լարվա-
ծության թուլացման, խաղաղ գոյակցության սկզբունքների գործնական իրա-
կանացման անցնելու ասպարեզում: Դրա հետ մեկտեղ դա նաև մեկնակետ է
կայուն խաղաղության և ժողովուրդների կյանքից պատերազմի բացառման
ուղիով Եվրոպայի հետագա համակողմանի առաջընթացի համար:

Այժմ գլխավորն այն է, որ քաղաքական լարվածության թուլացումը լրաց-
վի ռազմական լարվածության թուլացումով: Այդ իմաստով առաջնահերթ
խնդիրներից մեկն է՝ գտնել Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և
սպառազինությունների կրճատման ուղիներ, որը ոչ թե վնաս հասցնի որևէ
երկրի անվտանգությանը, այլ, ընդհակառակը, օգտավետ լինի բոլորի հա-
մար:

Մեր ժամանակների կարևորագույն պահանջներն են՝ հասնել սպառա-
զինությունների մրցավազքի կրճատման, ապա նաև դադարեցման, առաջ
ընթանալ դեպի ընդհանուր ու լրիվ զինաթափում տանող ուղիով, նվազեցնել
ռազմական դիմակայությունը եվրոպական հողում, գործը հասցնել Եվրոպայի՝
հակադիր ռազմական բլոկների բաժանման հաղթահարմանը:

Խորհրդակցության որոշումները մեծ նշանակություն ունեն ոչ միայն եվ-
րոպացիների համար: Խաղաղության իրավունքը պատկանում է մեր մոլորա-
կի յուրաքանչյուր մարդու: Լարվածության թուլացումը պետք է ընդլայնվի,
տարածվի աշխարհի բոլոր շրջանների վրա: Սովետական Միու-
թյունը իր պարտքն է համարում նպաստել միջազգային իրադրության զար-
գացմանը հենց այդ ուղղությամբ:

Երկրագնդի խաղաղության ամրապնդումը նպաստավոր հնարավորու-
թյուններ կստեղծի բոլոր ժողովուրդների տնտեսական և սոցիալական առա-
ջադիմության ապահովման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը բոլոր կուսակցական և սովետական կազմակերպությունների, բոլոր սովետական մարդկանց ուշադրությունն են հրավիրում այն բանի վրա, որ եվրոպական մայրցամաքում լարվածության թուլացման ամրապնդումը և զարգացումը, երկրների և ժողովուրդների համագործակցության ընդլայնումը ենթադրում են անդուլ ջանքեր՝ նպատակամղված սովետական էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի հետագա զարգացմանը, սովետական մարդկանց կոմունիստական գիտակցականության դաստիարակման, կոմունիզմի համար մղվող պայքարում նրանց ակտիվության բարձրացման ոգով գաղափարական աշխատանքի ծավալմանը:

Վճռականորեն և անսահմանորեն պաշտպանելով Սովետական Միության կոմունիստական կուսակցության արտաքին ու ներքին քաղաքականությունը, սովետական մարդիկ բարձրացնում են իրենց աշխատանքային ակտիվությունը: Նրանք նախապատրաստվում են աշխատանքային նոր հաջողություններով արժանավայել դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը: Դրանով իսկ նրանք ամրապնդում են ժողովուրդների խաղաղության անվտանգության և ազատության լենինյան քաղաքականության հիմքը, քաղաքականություն, որին անսասանորեն հավատարիմ են կոմունիստական կուսակցությունը և մեր սոցիալիստական պետությունը:

# ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՈՒ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ ԵՎՐՈՊԱՅԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՈՒ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵԼՍԻՆԿԻԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆՈՒՄ, 1975 թ. ՀՈՒԼԻՍԻ 31-ԻՆ

Հարգելի ընկեր նախագա՛հ:

Խորհրդակցության հարգելի մասնակիցնե՛ր:

Մենք բոլորս, մասնակցելով Եվրոպայի անվտանգության և համագոր-
ծակցության խորհրդակցության եզրափակիչ փուլին, զգում ենք այդ իրադար-
ձության անսովոր բնույթը, նրա քաղաքական մասշտաբայնությունը: Կարելի
է վստահությամբ ասել, որ նույնը զգում են խորհրդակցությանը մասնակցող
բոլոր երկրների, և ոչ միայն այդ երկրների, միլիոնավոր ու միլիոնավոր
մարդիկ: Նրանք մեզ հետ իմաստավորում են այն, ինչ այս օրերին տեղի է
ունենում Ֆինլանդիայի մայրաքաղաքում:

Ինչո՞վ է պայմանավորված այս դահլիճում գտնվող քաղաքական և պե-
տական բարձրագույն ղեկավարների այդպիսի վերաբերմունքը խորհրդակ-
ցության նկատմամբ:

Պատասխանը, ըստ երևույթին, այն է, որ խորհրդակցության արդյունք-
ների հետ կապված են սպասելիքներ և հույսեր, որոնք չի առաջացրել հետ-
պատերազմյան նշանավոր դաշնակցային համատեղ որոշումներին հաջորդած
ժամանակաշրջանի ոչ մի այլ կոլեկտիվ ակցիա:

Երկրորդ համաշխարհային պատերազմի սարսափներն ապրած սերնդի
մարդկանց առանձնապես պարզորոշ է երևում ներկա խորհրդակցության
պատմական իմաստը: Նրա նպատակները մոտիկ են նաև եվրոպացիների այն
սերնդի մտքին ու սրտին, որն աճել և ապրում է խաղաղության պայմաննե-
րում և որը իրավացիորեն գտնում է, որ այլ կերպ չպետք է լինի:

Եվրոպայի հողը առատորեն արյունով է հեղվել երկու համաշխարհային
պատերազմների տարիներին: Եվրոպական 33 պետությունների, ԱՄՆ-ի և
Կանադայի քաղաքական ու պետական բարձրագույն ղեկավարները հավաք-
վել են Հելսինկիում, որպեսզի համատեղ ջանքերով նպաստեն Եվրոպայի
վերածմանը մի մայրցամաքի, որը այլևս չտեսնի պատերազմական ցնցում-

ներ: Խաղաղության իրավունքը պետք է ապահովվի Եվրոպայի բոլոր ժողովուրդների համար: Իհարկե, մենք ուզում ենք, որ այդ իրավունքն ապահովվի նաև մեր մոլորակի մյուս բոլոր ժողովուրդների համար:

Լինելով բազմաթիվ և վառ ազգային կուլտուրաների կենտրոն, լինելով համաշխարհային քաղաքակրթության գագաթներից մեկը, Եվրոպան ի վիճակի է տալու կայուն խաղաղության հիման վրա միջպետական հարաբերությունների կառուցման լավ օրինակ:

Սովետական Միությունը խորհրդակցության արդյունքները դիտում է ոչ թե պարզապես իբրև երկրորդ համաշխարհային պատերազմի անհրաժեշտ քաղաքական արդյունքի ամփոփում: Դա միաժամանակ գալիքի իմաստավորումն է, ելնելով այսօրվա իրողություններից և Եվրոպայի ժողովուրդների բազմադարյան փորձից:

Այստեղ, Եվրոպայում, բազմիցս իրենց կասկածելի «դափնիներով» են պսակել ագրեսորները, իսկ ապա նրանց վրա ընկել է ժողովուրդների անեծքը: Այստեղ, Եվրոպայում, քաղաքական դոկտրինայի աստիճանի են հասցվել աշխարհակալության հավակնությունները, որոնք վերջացել են այն պետությունների կործանումով, որոնց ռեսուրսներն ի սպաս են դրված եղել մարդատյաց ոճրագործ նպատակներին:

Ահա թե ինչու հասել է ժամը՝ անխուսափելի կոլեկտիվ հետևություններ անելու պատմության փորձից: Եվ մենք այստեղ այդ հետևություններն անում ենք Եվրոպայի մայրցամաքի ապագայի համար մեր պատասխանատվության լիակատար գիտակցմամբ, որը պետք է գոյություն ունենա և զարգանա խաղաղության պայմաններում:

Հազիվ թե որևէ մեկը ժխտի, որ խորհրդակցության արդյունքները բոլոր մասնակից պետությունների շահերի մանրակրկիտ կշռադատված հաշվեկշիռն են: Ուստի, հարկավոր է դրանց առանձնապես խնամքով վերաբերվել:

Ետևում է թողնված ոչ դյուրին մի ճանապարհ՝ համաեվրոպական խորհրդակցության բուն գաղափարի առաջքաշումից մինչև նրա գագաթնակետը կազմող՝ եզրափակումը բարձր մակարդակով: Սովետական Միությունը, զգաստորեն գնահատելով Եվրոպայի և աշխարհի քաղաքական տարբեր ուժերի տեղաբաշխումը և դինամիկան, հաստատ համոզված է, որ լարվածության թուլացման և իրավահավասար համագործակցության հզոր հոսանքները, որոնք վերջին տարիներս ավելի ու ավելի մեծ չափով են որոշում եվրոպական և համաշխարհային քաղաքականության ընթացքը, խորհրդակցության և նրա արդյունքների շնորհիվ նոր ուժ և է՛լ ավելի մեծ թափ կստանան:

Այն փաստաթուղթը, որ մենք պետք է ստորագրենք, ամփոփելով անցյալի արդյունքները, իր բովանդակությամբ հասցեագրված է ապագային: Ձեռք բերված պայմանավորվածություններն ընդգրկում են ամենահրատապ պրոբլեմների՝ խաղաղության, անվտանգության, բազմազան բնագավառներում համագործակցելու լայն սպեկտր:

Մասնակից պետությունների հարաբերությունները փաստաթղթում խարսխվել են հիմնարար սկզբունքների լուրջ հիմքի վրա, որոնք պետք է որոշեն նրանց վարքագծի նորմերը իրենց փոխհարաբերություններում: Դրանք խաղաղ գոյակցության սկզբունքներ են, որոնց համար այնպիսի համոզմունքով ու հետևողականությամբ պայքարում էր սովետական պետության հիմ-



նադիր Վ. Ի. Լենինը, որոնց համար պայքարում է մեր ժողովուրդը նաև այսօր:

Խորհրդակցությունը սահմանել է համագործակցության ուղղությունները ու կոնկրետ ձևերը նաև առևտրատնտեսական, գիտության ու տեխնիկայի, շրջակա միջավայրի պաշտպանության, կուլտուրայի, կրթության, մարդկանց, հիմնարկությունների, կազմակերպությունների կոնտակտների ոլորտում:

Համագործակցության հնարավորությունները այժմ տարածվում են նաև այնպիսի բնագավառների վրա, որտեղ այն աներևակայելի կլիներ «սառը պատերազմի» տարիներին: Օրինակ, ինֆորմացիայի ավելի լայն փոխանակումները՝ հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության:

Գաղտնիք չէ, որ ինֆորմացիայի միջոցները կարող են ծառայել խաղաղության և վստահության նպատակներին, կարող են նաև աշխարհով մեկ տարածել երկրների ու ժողովուրդների երկպառակության թույնը: Մենք կուզենայինք հուսալ, որ խորհրդակցության արդյունքները ճիշտ կողմնորոշիչ կլինեն նաև այդ բնագավառներում համագործակցելու համար:

Խորհրդակցությունը ձեռք բերեց մի շարք կարևոր պայմանավորվածություններ, որոնք քաղաքական լարվածության թուլացումը լրացնում են ռազմական լարվածության թուլացմամբ: Դա նույնպես որակապես նոր աստիճան է պետությունների միջև վստահությունն ամրապնդելու գործում:

Սովետական Միությունը հետևողականորեն կողմնակիցն է այն բանի, որ խորհրդակցությունից հետո ռազմական լարվածությունը հետագայում ավելի թուլանա: Այդ իմաստով առաջնահերթ խնդիրներից մեկն է՝ գտնել կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կըրճատման ուղիներ, առանց որևէ մեկի անվտանգությանը վնաս հասցնելու: Ընդհակառակը՝ օգուտ բերելով բոլորին:

Խորհրդակցությունում ձեռք բերված պայմանավորվածությունների քաղաքական հատուկ նշանակությունն ու բարոյական ուժն այն է, որ դրանք կհաստատվեն մասնակից պետությունների բարձրագույն ղեկավարների ստորագրություններով: Մեր ընդհանուր կարևորագույն խնդիրն է՝ լիակատար ներգործուն ուժ տալ այդ պայմանավորվածություններին:

Մենք ելնում ենք այն բանից, որ խորհրդակցությունում ներկայացված բոլոր երկրները կենսագործելու են ձեռք բերված պայմանավորվածությունները: Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա գործելու է հենց այդպես:

Մեր կարծիքով, խորհրդակցության ընդհանուր արդյունքն այն է, որ միջազգային լարվածության թուլացումը ավելի ու ավելի մեծ ծավալով է լըցվում կոնկրետ նյութական բովանդակությամբ: Հենց լարվածության թուլացման նյութականացում. ահա որն է գործի էությունը, ինչը պետք է իրոք ամուր և անխախտ դարձնի խաղաղությունը Եվրոպայում: Եվ, ընդսմին, մենք անկյունաքար ենք դարձնում սպառազինությունների մրցավազքի դադարեցման, զինաթափման գործում ռեալ արդյունքների ձեռքբերման խնդիրը:

Շատ կարևոր է հռչակել պետությունների փոխհարաբերությունների ճիշտ և արդարացի սկզբունքներ: Պակաս կարևոր չէ՝ այդ սկզբունքները արմատավորել արդի միջազգային հարաբերություններում, արմատավորել պրակտիկայում և դրանք դարձնել միջազգային կյանքի օրենք, որը զանց առնել ոչ ոքի իրավունք չի տրված: Մեր խաղաղասիրական քաղաքականու-

թյունն ուղղված է այդ նպատակին, որի մասին մենք մեկ անգամ ևս հայտարարում ենք նաև այս բարձր ամբիոնից:

Իհարկե, Եվրոպայի 33 պետությունների, ԱՄՆ-ի և Կանադայի ղեկավար գործիչների բուն հանդիպումը, որը պատմության մեջ աննախադեպ է, պետք է հիմնական օղակ դառնա լարվածության թուլացման, Եվրոպայի և միջազգային անվտանգության ամրապնդման, փոխշահավետ համագործակցության զարգացման պրոցեսում: Այս ամենն այդպես է:

Բայց, որպեսզի այս հանդիպման, խորհրդակցության որոշումների հետ կապված՝ ժողովուրդների հույսերը լիովին արդարանան, չսասանվեն առաջին իսկ վատ եղանակից, հարկավոր են հետագա ընդհանուր ջանքեր, բոլոր մասնակից պետությունների ամենօրյա աշխատանքը՝ լարվածության թուլացումը խորացնելու համար:

Խորհրդակցության հաջողությունը հնարավոր դարձավ միայն այն բանի շնորհիվ, որ նրա մասնակիցները, մշտապես ընդառաջ գնալով միմյանց, կարողացան հաղթահարելով դժվարությունները, հաճախ էլ ոչ փոքր դժվարություններ, վերջիվերջո, մշակել բոլորի համար ընդունելի պայմանավորվածություններ քննարկված հարցերից յուրաքանչյուրի վերաբերյալ: Այդ պայմանավորվածությունները ծնունդ են առել և ձեռք են բերվել ոչ թե խորհրդակցության մի խումբ մասնակիցների հայացքները մյուսներին պարտադրելու միջոցով, այլ բոլորի կարծիքներն ու շահերը հաշվի առնելու հիման վրա և ընդհանուր համաձայնությամբ:

Եթե այստեղ կան փոխզիջումներ, ապա դրանք հիմնավորված փոխզիջումներ են, այնպիսիք, որպիսիք ծառայում են խաղաղությանը, չվերացնելով գաղափարախոսության և հասարակական սիստեմների տարբերությունները: Ավելի ճիշտ ասած, դա մասնակից պետությունների ընդհանուր քաղաքական կամքի դրսևորումն է այն ձևով, ինչ ձևով այն այսօր հասանելի է տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների գոյակցության պայմաններում:

Խորհրդակցության աշխատանքի փորձից կարևոր հետևություններ են բխում նաև ապագայի համար: Դրանցից գլխավորը, և դա արտահայտված է ամփոփիչ փաստաթղթում, հետևյալն է՝ ոչ ոք չպետք է, հենվելով արտաքին քաղաքական բնույթի այս կամ այն նկատառման վրա, փորձի ուրիշ ժողովուրդների թելադրել, թե ինչպես պետք է նրանք դասավորեն իրենց ներքին գործերը: Ամեն մի պետության ժողովուրդ, և միայն նա սուվերեն իրավունք ունի տնօրինելու իր ներքին գործերը, սահմանելու իր ներքին օրենքները: Մի այլ մոտեցում խախտում և վտանգավոր հող է միջազգային համագործակցության համար:

Մեր կողմից ստորագրվող փաստաթուղթը պետությունների միակողմանի, երկկողմ և բազմակողմ գործողությունների լայն, բայց հստակ պլատֆորմ է տարիների, գուցե և տասնամյակների համար: Բայց ձեռք բերվածը վերջնական սահման չէ: Այսօր դա հնարավորի առավելագույնն է, իսկ վաղը դա պետք է դառնա մեկնակետ հետագա առաջխաղացման համար այն ուղղություններով, որ բացել է խորհրդակցությունը:

Մարդկությանը հատուկ է հաջորդության ձգտումը նախաձեռնությունների և գործերի մեջ: Դա վերաբերում է նաև այն մեծ գործին, որին այժմ ձեռնարկում են Հելսինկիում ներկայացված 35 պետությունները: Դա իր արտա-



ճայնությունն է գտել այն բանում, որ Եվրոպայի անվտանգության և համագործակցության առաջին խորհրդակցությունից հետո հետագա քայլեր են նախատեսվել նաև խնդիրների իրականացման ու զարգացման համար:

Իր հետևողականությամբ անսովոր այս լսարանում մենք կկամենայինք ամբողջ ուժով շեշտել Սովետական Միության արտաքին քաղաքականության, խաղաղության և ժողովուրդների բարեկամության լենինյան քաղաքականության անկապտելի գծերից մեկը՝ նրա մարդասիրությունը: Մարդասիրության գաղափարներով են տոգորված մեր կուսակցության XXIV համագումարի որոշումները, խաղաղության ծրագիրը, որի կետերից մեկը համաեվրոպական խորհրդակցության հրավիրումն էր:

Մենք խորին գոհունակությամբ ենք նշում, որ Եվրոպայի խաղաղության ամրապնդման գլխավոր պրոբլեմների կապակցությամբ խորհրդակցության մշակած դրույթները ծառայում են ժողովուրդների շահերին, ծառայում մարդկանց շահերին՝ անկախ նրանց զբաղմունքի տեսակից, ազգությունից, տարիքից, բանվորների, գյուղի աշխատավորների, մտավոր աշխատանքի մարդկանց, ամեն մի առանձին մարդու և միասին վերցրած բոլորի շահերին: Դրանք տոգորված են մարդու հանդեպ հարգանքով, հոգատարությամբ այն բանի նկատառմամբ, որ նա ապրի խաղաղության պայմաններում և վստահությամբ նայի վաղվա օրվան:

Մեր ձեռք բերած պայմանավորվածություններն ընդգրկում են, այսպես կոչված, «մեծ քաղաքականության» վրա ժողովուրդների ներգործությունն ուժեղացնելու հնարավորությունները: Միևնույն ժամանակ դրանք շոշափում են նաև կենցաղային բնույթի պրոբլեմներ: Դրանք կնպաստեն մարդկանց կենսապայմանների բարելավմանը, նրանց աշխատանքով ապահովելուն, կրթության պայմանների բարելավմանը: Դրանք կապված են առողջության նկատմամբ հոգատարության հետ, կարճ ասած, շատ հարցերի հետ, որոնք վերաբերում են առանձին մարդկանց, ընտանիքների, երիտասարդությանը, հասարակության տարբեր խմբերին:

Ինչպես որ այս ամբիոնից հանդես եկած ուրիշ շատերը, մենք Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցությունը գնահատում ենք որպես նրա բոլոր մասնակիցների ընդհանուր հաջողությունը: Նրա արդյունքները օգտակար կարող են լինել նաև Եվրոպայի սահմաններից դուրս:

Չկան հաղթողներ ու պարտվածներ, շահածներ ու կորցնողներ: Դա բանականության հաղթանակն է: Շահել են բոլորը՝ Արևելքի և Արևմուտքի երկրները, դաշինքների մասնակից և չեզոք, փոքր և խոշոր, սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների ժողովուրդները: Դա շահումն է այն բոլորի, ում համար թանկ է մեր մոլորակի խաղաղությունն ու անվտանգությունը:

Մենք համոզված ենք, որ այն ամենի հաջող կենսագործումը, ինչի մասին այստեղ պայմանավորվեցինք, ոչ միայն բարերար ազդեցություն կունենա եվրոպական ժողովուրդների կյանքի վրա, այլև կարևոր ավանդ կլինի ընդհանուր խաղաղության ամրապնդման գործում:

Եվ էլի մի միտք, որին, հավանաբար, համաձայն են այստեղ ներկաներից շատերը: Խորհրդակցությունը միջազգային քաղաքականության օգտակար դպրոց եղավ մասնակցող պետությունների համար, հատկապես օգտա-

ար մեր օրերում, երբ գոյություն ունեն ավերման ու բնաջնջման աներևակայելի միջոցներ:

Այն հզոր մղումը, որը տվեց խորհրդակցության մասնակից 35 պետությունների ղեկավարների այս հանդիպումը, կոչված է Եվրոպայում ու նրա սահմաններից դուրս ամենքին օգնելու՝ ապրել հաշտ ու խաղաղ:

Վերջում կկամենայի Ֆինլանդիայի ժողովրդին ու կառավարությանը, անձամբ պրեզիդենտ Ու. Կեկոնենին խորին երախտագիտություն հայտնել երրորդ փուլի աշխատանքը հիանալի կազմակերպելու, բացառիկ սիրալիրության և հյուրընկալության համար: (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1975** թվականի հուլիսի 30-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական XVII պլենումը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էին կուսակցության քաղկոմների և շրջկոմների առաջին քարտուղարներ, հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարներ, աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների նախագահներ, արհմիութենական և կոմերիտական աշխատողներ, արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարներ ու սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ, գիտության գործիչներ, մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի աշխատողներ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի ապարատների պատասխանատու աշխատողներ:

Պլենումը քննարկեց հետևյալ հարցը՝ «Հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը կատարելու և ՍՄԿԿ XXV համագումարը արժանավայել դիմավորելու վերաբերյալ»: Այդ հարցին նվիրված զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երեվանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ, պետպլանի նախագահ ընկ. Ս. Լ. ԹՈՒՄԱՆՅԱՆԸ, Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի ապարատավարների բրիգադավար, սոցիալիստական աշխատանքի հերոս ընկ. Ս. Մ. ՊԵՏՐՈՍՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր ընկ. Հ. Վ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆԸ, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի դիրեկտոր ընկ. Գ. Ս. ԴԱՐԲԻՆՅԱՆԸ, կուսակցության Կամոյի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի վիցե-պրեզիդենտ ընկ.

Ս. Ա. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԸ, Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի սովխոզի ղեկավարուհի ընկ. Մ. Վ. ՄԵԼԻՔԲԵԿՅԱՆԸ, «Հայպետնախագիծ» ինստիտուտի դիրեկտոր ընկ. Կ. Հ. ՀԱԿՈԲՅԱՆԸ, ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. Լ. Գ. ՍԱՀԱԿՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների գլխավոր վարչության պետ ընկ. Հ. Գ. ՂԱՄԲԱՐՅԱՆԸ:

Քննարկված հարցի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը ընկ. Ն. Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻՆ ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Պլենումը ընկ. Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎԻՆ ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ:

Պլենումը ընկ. Մ. Բ. ԱՐՁՈՒՄԱՆՅԱՆԻՆ ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցեց ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Ն. Պ. ԳՐՈՄԻԿՈՆ:

---

## ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ «ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ» ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՈՐՈՇՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ԵՎ ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵԼՈՒ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

### Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը* ՀԿԿ Կենտկոմի պլենումում, 1975 թվականի հուլիսի 30-ին

*Ընկերնե՛ր:*
*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը տեղի է ունենում այն օրերին,*
*երբ մեր կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովուրդը նախապատ-*
*րաստվում են արժանավայել դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը:*
*Մեր կուսակցության յուրաքանչյուր համագումար նշանավորում է սով-*
*ետական հասարակարգի զարգացման, կոմունիստական շինարարության մի*
*նոր, կարևոր փուլ, որը որոշիչ դեր է խաղում նրա ողջ կյանքի ու գործունեու-*
*թյան մեջ:*
*Կուսակցության XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանը*
*մեկ անգամ ևս հաստատեց ՍՄԿԿ-ի ու նրա լենինյան Կենտկոմի գործունեու-*
*թյան ստեղծարար, նորարարական բնույթը, գործունեություն, որն ուղղված է*
*մեր երկրի ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության արմա-*
*տական պրոբլեմների տեսական մշակման ու գործնական իրականացման,*
*սոցիալիստական հասարակության զարգացման հրատապ խնդիրների լուծման*
*նպատակին: Կյանքը, մեր սոցիալիստական պրակտիկան լիովին հաստատե-*
*ցին ՍՄԿԿ-ի քաղաքական կուրսի ճշտությունն ու ներգործուն ուժը:*
*Անցած քառամյակի գլխավոր քաղաքական հանրագումարը, ինչպես նշեց*
*ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) պլենումը, այն է, որ ապահովվել է*
*ամբողջությամբ վերցրած երկրի ժողովրդական տնտեսության դինամիկ զար-*
*գացումը, մեծ առաջընթաց քայլ է կատարվել կոմունիզմի նյութա-տեխնիկա-*
*կան բազայի ստեղծման գործում: Հաջողությամբ կենսագործվում են կուսակ-*
*ցության XXIV համագումարի արտաքին-քաղաքական կուրսը, նրա հաստա-*
*տած խաղաղության ծրագիրը:*

* *Տպագրվում է համառոտումներով:*

հարուստ ռեսուրսներն օգտագործելու հարցը: Ընդ որում, ուշադրություն է հրավիրվում դրանց խնայողաբար և ռացիոնալ օգտագործման վրա:

Շինանյութերի արդյունաբերության մինիստրությանը հանձնարարված է մշակել Հայկական ՍՍՀ-ում բնական քարից (տուֆից, տրավերտինից, ֆելզիտից և այլն) երեսպատման նյութերի, պեռլիտային հումքի և պեմզայի բազայի վրա ստեղծվող շինանյութերի, ինչպես նաև հրաբխային խարամներից ու տուֆերից ծակոտկեն բնական լցանյութերի՝ խճի և ավազի արտադրությունը զգալիորեն ավելացնելու տեխնիկատնտեսական հիմնավորումը, երկրի մյուս շրջանները և նրա սահմաններից դուրս այդ նյութերն արտահանելու նպատակով:

Նախատեսվում է նոր ձեռնարկությունների կառուցման, գործող ձեռնարկությունների և օբյեկտների ընդլայնման ու վերակառուցման, հնացած տեխնոլոգիական սարքավորումները նոր, բարձր արտադրողական սարքավորումներով փոխարինելու լայն ծրագիր, որն ընդգրկում է հանրապետության արդյունաբերության բոլոր ճյուղերը:

Հիշյալ որոշմամբ լուծվում են հանրապետության աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և որակյալ բանվորական կադրերի պատրաստման հարցերը:

ՍՍՀՄ մինիստրություններին ու գերատեսչություններին և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին հանձնարարված է նոր ձեռնարկությունները տեղաբաշխել գերազանցապես նոր կազմակերպվող արդյունաբերական հանգույցներում, միջին ու փոքր քաղաքներում՝ հաշվի առնելով արտադրական օբյեկտների, բնակարանային-կոմունալ և կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման հարցերի կոմպլեքսային լուծման անհրաժեշտությունը: 1976—1980 թվականներին նոր արդյունաբերական ձեռնարկություններ կառուցել և գործող ձեռնարկությունների առկա մասնաճյուղերը վերակառուցել հանրապետության այն շրջաններում, որտեղ կա հանքային արտադրության մեջ չզբաղված աշխատունակ բնակչություն:

Աշխատուժի լրացուցիչ հավաքագրման հնարավորություն ստեղծելու համար, միտելով բարձրացնել հերթափոխայնության գործակիցը և բարելավել ձեռնարկությունների կարողությունների օգտագործումը, տասներորդ հնգամյակում համապատասխան ձեռնարկություններին միջոցներ կհատկացվեն բնակելի տների, կոմունալ օբյեկտների, մանկական նախադպրոցական հաստատությունների շինարարության համար այն վայրերում, որտեղ այդ պատճառով բանվորական ուժի պակաս է զգացվում:

Հատուկ ուշադրություն կնվիրվի երիտասարդ որակյալ բանվորական կադրերի պատրաստմանը: Այդ նպատակով կկառուցվեն պրոֆեսիոնալ-տեխնիկական նոր ուսումնարաններ և կընդլայնվեն գործող ուսումնարանները:

Ընկերնե՛ր: Ձեզ տրամադրված նյութերում մանրամասն նշված են այն բոլոր միջոցառումները, որոնք ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ նախատեսվում է իրականացնել արդյունաբերության բնագավառում: Ուստի, թույլ տվեք անցնել այն խնդիրների շարադրմանը, որոնք մեր առջև կանգնած են ինչպես այդ միջոցառումների կատարումն ապահովելու, այնպես էլ ողջ հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքը բարելավելու մի քանի ընդհանուր հարցերի առնչությամբ:

Սույն որոշումը հիմք է դնում այն հսկայական աշխատանքին, որը պետք է կատարվի հանրապետական կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ՝ արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի բարելավման, դրա արդյունավետության բարձրացման և հետագա ճիշտ ու ռացիոնալ զարգացումն ապահովելու նպատակով:

Այժմ մեր գլխավոր խնդիրն է լրիվին և նախատեսված ժամկետներում կատարել այդ որոշմամբ սահմանված բոլոր միջոցառումները: Թերևս հանդիպենք չնախատեսված օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի շատ դժվարությունների: Մենք պետք է հասնենք այն բանին, որ մեզնից յուրաքանչյուրը պայքարի



հանուն արդյունաբերության բնագավառում կանխագծված նպատակների իրա-
կանացման:
Նախ, հանրապետության պետպլանը, պետշինը, մինիստրություններն ու
գերատեսչությունները և նրանց համապատասխան ստորաբաժանումները
պետք է հետևողական աշխատանք կատարեն նոր կառուցվող արդյունաբերա-
կան բոլոր ձեռնարկությունների համար շինարարության հողամասերի հատ-
կացումը և նախագծային-նախահաշվային փաստաթղթերի մշակումը պլանա-
վորված ժամկետներում իրոք ապահովելու և այդ օբյեկտները ժամանակին
ամփոփեն կապիտալ շինարարության տիտղոսացանկերի մեջ:
Մինիստրների սովետը պետք է անդուլ հսկի այդ աշխատանքին և հարկ
եղածին պես օգնի հիշյալ կազմակերպություններին այդ օբյեկտների նախա-
գծման և շինարարությունն սկսելու գործում:
Երկրորդ. ընդլայնման ու վերակառուցման ենթակա բոլոր արդյունաբերա-
կան օբյեկտների ղեկավարները, կուսակցական կազմակերպությունները պետք
է ապահովեն նախագծերի ժամանակին մշակումը, քննարկեն այդ նախագծերը
և ճիշտ ժամանակին ներկայացնեն վերադաս կազմակերպությունների հաս-
տատմանը, ընդլայնման ու վերակառուցման աշխատանքները որոշմամբ սահ-
մանված ժամկետներում սկսելու և ավարտելու համար:
Երրորդ. ամեն մի արդյունաբերական ձեռնարկություն պետք է ունենա
հիմնական արտադրաֆոնդերի նորացման, արտադրության տեխնոլոգիայի և
դրա կազմակերպման կատարելագործման, սարքավորումների առկա համա-
կազմի մոդեռնացման, ձեռնարկության տեխնիկական վերազինման, արտա-
դրության տեխնիկական մակարդակի բարձրացման և ձեռնարկության սոցիա-
լական զարգացման հիմնավորված պլաններ:
Արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական ու կուսակցական
ղեկավարությունը պետք է գլխավորի այդ միջոցառումների մշակման գործը և
կոմունիստների ու կոլեկտիվների անդամների ջանքերն ուղղի դրանց անշեղ
կատարմանը:

Հիշյալ որոշումից բխող խնդիրները ժամանակին լուծելու համար հատկապես պատասխանատու են նախագծային-կոնստրուկտորական, տեխնոլոգիական ինստիտուտներն ու կազմակերպությունները: Դրանց կոլեկտիվները, կուսակցական կազմակերպություններն ու ղեկավարներն իրենցից կախված ամեն բան պետք է անեն՝ ապահովելու նախագծերի կատարումը բարձր մակարդակով և որքան կարելի է կարճ ժամկետում:

Հայաստանի կոմկուսի շրջանային և քաղաքային կոմիտեները լիակատար պատասխանատվություն են կրում համապատասխան շրջանների և քաղաքների տերիտորիաներում գտնվող ձեռնարկություններում և կազմակերպություններում վերոհիշյալ խնդիրների իրականացման համար:

Յուրաքանչյուր ձեռնարկությունում, մինիստրությունում ու գերատեսչությունում, բոլոր մարմիններում այդ աշխատանքը կատարողները պետք է հստակորեն իմանան իրենց աշխատանքների ծավալներն ու ժամկետները և լիակատար պատասխանատու լինեն դրանց կատարման համար:

Որոշմամբ նախատեսված միջոցառումների կատարման համար Կենտկոմի առջև անձնական պատասխանատվություն կկրեն կուսակցական, սովետական և տնտեսական համապատասխան մարմինների, կուսակցական կոմիտեների, արդյունաբերական ձեռնարկությունների և դրանց կուսակցական կազմակերպությունների ղեկավարները:

Կենտկոմի հունվարյան պլենումում հանգամանորեն խոսվեց այն թերությունների մասին, որոնք գոյություն ունեն արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքում, հատկապես արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում:

Ինքնաքննադատաբար վերլուծելով պլենումից հետո անցած ժամանակամիջոցում կատարված աշխատանքի արդյունքները, մենք պետք է արձանագրենք, որ, չնայած որոշ դրական տեղաշարժերին, ամբողջությամբ վերցրած արդյունքներն առայժմ բնավ չեն կարող մեզ բավարարել:

նորեն ներդնելու համար։ Դրանք չունեն փորձնական-արդյունաբերական ստուգումների տվյալներ, չկա պատշաճ կազմված տեխնիկատնտեսական հիմնավորում, հաճախ բացակայում է նախնական անհրաժեշտ համաձայնությունը համապատասխան արտադրական ձեռնարկությունների կամ այն կազմակերպությունների հետ, որոնք պետք է օգտագործեն կամ ներդնեն այդ մշակումները։

Ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը. «Եթե մենք ուզում ենք հաջողությամբ առաջ շարժվել,— իսկ մենք, որպես կոմունիզմ կառուցող երկիր, պետք է շարունակ առաջ գնանք,— ապա պետք է ձեռնարկել իրոք հեղափոխական միջոցառումներ և ստեղծել գիտության ու արտադրության ամուր, կուռ համաձուլվածք»։

Լուրջ խնդիրներ են կանգնած բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության աշխատողների առջև։

Հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը և բարձրագույն ուսումնական հաստատություններ ու տեխնիկումներ ունեցող մյուս մինիստրությունները, բարձրագույն ուսումնական հաստատությունների ղեկավարները պետք է հոգան ուսումնական հաստատությունների շրջանավարտների որակավորումը բարձրացնելու, նրանց քաղաքական պատրաստականությունը և բարոյական հատկությունները կատարելագործելու մասին, որպեսզի արտադրության մեջ աշխատելու առաջին իսկ օրերից նրանց աշխատանքը արդյունավետ լինի։ Մյուս կողմից, անհրաժեշտ է, որ հանրապետության պետպլանի հետ համատեղ նրանք ուսումնասիրեն ժողովրդական տնտեսության պահանջմունքները նոր պրոֆիլի մասնագետների պատրաստման առումով՝ հանրապետությունում արտադրության նոր ճյուղեր ստեղծելու կապակցությամբ և ամենամոտ ժամանակներս ձեռնամուխ լինեն դրան, ինչպես նաև հին պրոֆիլների մասնագետների պատրաստումը համապատասխանեցնեն հանրապետության ժողովրդական տնտեսության պահանջմունքներին։

Անհրաժեշտ է արմատապես բարելավել ժողովրդական տնտեսության մեջ աշխատող մասնագետների վերապատրաստման և նրանց որակավորման բարձրացման աշխատանքները։

Ժողովրդական տնտեսության՝ հանրապետության նոր ինստիտուտի ստեղծումը պետք է օգտագործել բարձրորակ տնտեսագետներ և տնտեսագիտական պրոֆիլի այլ մասնագետներ պատրաստելու համար, որոնք կարողանան մշակել և կայացնել պատասխանատու տնտեսական որոշումներ, ունենան ընդհանուր գիտական և տեխնոլոգիական պատրաստություն, տիրապետեն քանակական վերլուծության, տնտեսական մոդելավորման և ծրագրման մեթոդներին. ձգտել այն բանին, որ այդ մասնագետները կարողանան լիովին բավարարել գալիք տարիների պահանջները։

Մենք պարտավոր ենք հատուկ ուշադրություն դարձնել հանրապետությունում պրոֆտեխնիկական կրթությունն ըստ ամենայնի բարելավելու վրա։ Անհրաժեշտ է ընդլայնել լրիվ միջնակարգ կրթություն տվող պրոֆտեխնիկական դպրոցների ցանցը, ապահովել պրոֆեսիոնալ բարձր մակարդակ ունեցող երիտասարդ բանվորների պատրաստումը։

## ԱՐՄԱՏԱՊԵՍ ԲԱՐԵԼԱՎԵԼ ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման առնչությամբ այսօր հանրապետության կուսակցական կազմակերպության առջև կարևոր խնդիրներ են կանգնած հատկապես կապիտալ շինարարության հետագա ծավալման ասպարեզում։ Կապիտալ շինարարությունն այն գլխավոր օղակն է, որից բռնելով, մենք կկարողանանք լուծել մեր առջև դրված խնդիրները։ Հիրավի, արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման, ընդլայնման և վերակառուցման վիթխարի ծրագիրը, գյուղատնտեսական շինարարության մեծ ծավալները, սպասարկման ոլորտի նյութա-տեխնիկական բազայի ամ-



րապնդումը, կուլտուրական, բնակարանային, կոմունալ-կենցաղային շինարարության խնդիրների լուծումը՝ այս ամենը պայմանավորված են կապիտալ շինարարության հաջող իրագործմամբ։

Սակայն կապիտալ շինարարության այսօրվա վիճակը խոր մտահոգություն, անհանգստություն է պատճառում և պահանջում է անհետաձգելի միջոցներ ձեռնարկել դրա արմատական բարելավման համար։

Շինարարության մեջ գլխավոր արատը կապիտալ ներդրումների պլանների խրոնիկական թերակատարումն է և արտադրական կարողությունների, բնակարանների, կուլտուր-կենցաղային օբյեկտների ու պետական հիմնական ֆոնդերի գործարկման սիստեմատիկ վիժեցումը։

Հիմնական ֆոնդերի գործարկման պլանների ձախողման հետևանքով հնգամյակի չորս տարում անավարտ շինարարության ծավալն աճել է 13 տոկոսով և 1975 թվականի տարեկան պլանի համեմատությամբ կազմել 105,5 տոկոս։

Խափանվել են մի շարք կարևոր արդյունաբերական և կուլտուր-կենցաղային օբյեկտների գործարկման ժամկետները։

Կապիտալ շինարարության անմխիթարական վիճակը մի շարք պատճառներ ունի։

Առաջին և, թերևս, ամենահիմնական պատճառը հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների, շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների, առանձին կուսակցական ու սովետական մարմինների ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքն է կապիտալ շինարարության և օբյեկտների գործարկման պետական պլանների կատարումն ապահովելու նկատմամբ, ինչպես նաև նրանց անտնտեսվարությունը և հատկացված ռեսուրսների ոչ-ռացիոնալ օգտագործումը։

Ոչնչով չի կարելի արդարացնել բազմաթիվ օբյեկտների կառուցման սահմանված ժամկետների ձգձգումը։

Արդյունաբերական շինարարության մինիստրությունը 8 տարի է, ինչ կառուցում է Գորիսի միկրոշարժիչների գործարանը։ 1969 թվականից սկսել է կառուցվել Սևանի ալրաղաց կոմբինատը, բայց մինչև օրս շահագործման չի հանձնվել, 8-ական տարի կառուցվում են «Մասիս» գործվածքային ֆաբրիկան և մետաղյա իրերի գործարանը Երևանում։

Գյուղական շինարարության մինիստրությունը 1966 թվականից Հոկտեմբերյանում կառուցում է պահածոյի ապակետարայի գործարան, ինը տարում իրացվել է նախահաշվային արժեքի միայն 26,7 տոկոսը և շին-մոնտաժային աշխատանքների ծավալի 44,5 տոկոսը։

Անթույլատրելիորեն ձգձգվում են բնակարանների կառուցման ժամկետները։ Հինգհարկանի տները երբեմն կառուցվում են 4—5 տարում։ Օրինակ, գյուղական շինարարության մինիստրությունը ոչ մի կերպ չի կարողանում ավարտել 1971 թվականին Կալինինոյում, 1972 թվականին Գուգարքում և Արթիկում սկսված բնակելի տների շինարարությունը։ Արդյունաբերական շինարարության մինիստրությունը Երևան քաղաքում հարկերի բարձրացման մեթոդով ստեղծվող շատ շենքեր կառուցում է ավելի քան 4 տարում։

Անբավարար են կառուցվում բնության պահպանության հետ կապված կարևոր օբյեկտները։ Կեղտաջրերի մաքրման կայանքներ են կառուցվում 1964 թվականից՝ Ջերմուկում, 1966 թվականից՝ Ալավերդում, 1969 թվականից՝ Սպիտակում, 1970 թվականից՝ Լենինականում։

Շինարարության ժամկետների այդ բոլոր աղաղակող խախտումների մեջ զգալի մեղք ունեն նաև մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների գլխավոր վարչության կազմակերպությունները, որոնք հաճախ երկար ժամանակ ձգձգում են մոնտաժման ժամկետները։

Շինարարական մինիստրություններն ու գերատեսչությունները, տրեստների, շինարարական և մոնտաժային կազմակերպությունների ղեկավարները, հանգստանալով աշխատանքի ընդհանուր ցուցանիշներով, շարունակում են հաշտվել առանձին օղակների անբավարար գործունեության հետ, գործնական

նավորվում են ավելի շատ կապիտալ ներդրումներ, քան ընթացիկ հնգամյակում:

Շինարարների համար մոտակա ժամանակաշրջանի առաջնահերթ խնդիրներից մեկը շինարարության նյութատեխնիկական բազայի ամրապնդման հիշյալ միջոցառումների կոմպլեքսի լրիվ կատարումն է, որը ունակ նախադրյալներ կստեղծի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում որոշմամբ նախատեսված կապիտալ շինարարության խոշոր ծրագիրն իրականացնելու համար:

Հասկանալի է, որ այդ խնդրի լուծման համար առաջին հերթին լիակատար պատասխանատվություն են կրում իրենք՝ շինարարական և մոնտաժային մինիստրությունների ու գերատեսչությունները, դրանց արտադրական ստորաբաժանումներն ու սկզբնական կուսակցական կազմակերպությունները: Նրանք պետք է ճշտորեն որոշեն յուրաքանչյուր կատարողի խնդիրները և ապահովեն կատարողական կարգապահության բարձրացումը: Շինարարության, շինարարական ինդուստրիայի ընդլայնման, վերակառուցման և տեխնիկական վերազինման հարցերը պետք է գտնվեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների և կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում, նրանք պետք է մոբիլիզացնեն կոլեկտիվների ջանքերը այդ գործում կտրուկ բեկում ստեղծելու համար:

Պատասխանատու խնդիրներ են դրված նաև հանրապետության պետշինի և պետպլանի առջև: Կապիտալ ներդրումների ռացիոնալ կառուցվածքը, դրա փոփոխությունների գիտականորեն հիմնավորված կանխատեսումը և, դրան համապատասխան, կապիտալ շինարարության բազայի զարգացման պլանավորումը հանրապետության պլանավորող մարմինների հրատապ խնդիրներից մեկն է: Անհրաժեշտ է սիստեմատիկ զբաղվել կապիտալ շինարարության արմատական խնդիրների լուծմամբ, ելնելով արտադրության հետագա մասնագիտացման, համակենտրոնացման, շինարարական արտադրության արդյունավետության և աշխատանքների որակի բարձրացման սկզբունքներից:

Շինարարության նյութատեխնիկական բազայի զարգացման գործում խիստ որոշակի դեր պետք է խաղա հանրապետության պետշինը: Լինելով շինարարության մեջ տեխնիկական քաղաքականության կիրառողը, հանրապետության պետշինը պետք է վերահսկի շինարարական արտադրության տեխնիկական զարգացումը, կոորդինացնի նախագծողների և շինարարների ջանքերը շինարարական նոր կոնստրուկցիաների ստեղծման, նյութերի նոր տեսակների, աշխատանքների կազմակերպման նոր մեթոդների կիրառման գործում: Սակայն այդ առումով պետշինի աշխատանքն առայժմ նվազ արդյունավետ է:

Հանրապետությունում կապիտալ շինարարության անբավարար վիճակն զգալի չափով պայմանավորված է նախագծային կազմակերպությունների աշխատանքում եղած լուրջ թերություններով:

Պետք է ուղղակի ասել, որ Հայկական ՍՍՀ պետշինը և նախագծային կազմակերպությունները դեռևս անբավարար են կատարում կուսակցության և կառավարության դիրեկտիվներն ու որոշումները նախագծային գործը բարելավելու, մշակվող նախագծերի ու նախահաշիվների որակը արդիական պահանջների մակարդակին հասցնելու վերաբերյալ:

Արտադրական օբյեկտները նախագծելիս դեռևս քիչ են կիրառվում հայրենական և համաշխարհային գիտության ու տեխնիկայի նվաճումները, երբեմն նախագծերում կիրառվում են հնացած տեխնոլոգիա, նվազ արտադրողական սարքավորումներ, չեն նախատեսվում կենցաղային բավարար պայմաններ: Նախագծերն ու նախահաշիվները երբեմն հանձնվում են անթույլատրելի դեֆեկտներով, որի հետևանքով ձգձգվում են շինարարության ժամկետները, բարձրանում է դրա արժեքը և կատարվում անարտադրողական մեծ ծախսումներ:

Մասսայական բնույթ է ստացել կառուցվող օբյեկտների նախահաշիվների վերանայումը ավելի վաղ ընդունված նախագծային լուծումների փոփոխման, տեխնիկատնտեսական հիմնավորումների անորակության, նախագծային կազ-



մակերպությունների սխալների և նման այլ պատճառներով: Միայն 1971—1974 թվականներին ստուգված 144 կառույցների նախահաշվային արժեքը սկզբնականի համեմատ ավելացել է 240,7 միլիոն ռուբլով, կամ 23 տոկոսով:

Լուրջ թերություններ կան քաղաքների կառուցապատման նախագծերում: Անբավարար ուշադրություն է նվիրվում կառուցապատման կոմպլեքսայնությանը և ճարտարապետորեն արտահայտիչ հասարակական կենտրոնների ստեղծմանը: Շատ զանգվածների և թաղամասերի մանրամասն հատակագծման նախագծերը ժամանակին չեն կազմվում, որի հետևանքով հաճախ չի ապահովվում նոր և հին օբյեկտների անհրաժեշտ զուգորդումը, աղոտանում, նույնիսկ առհասարակ անհետանում է պատկերացումը ճարտարապետական համակառույցների մասին: Միշտ չէ, որ հմտորեն զուգորդվում են ազգային ճարտարապետության դեմոկրատական ավանդույթները շինարարության ժամանակակից ինդուստրիալ մեթոդների ու տեխնիկական հնարների հետ:

Հարկ է նշել, որ նախագծային կազմակերպություններն անբավարար են իրականացնում տեխնիկական քաղաքականությունը բնակարանային շինարարության բնագավառում: Հանրապետության քաղաքներում բնակարանային շինարարության՝ կառավարության կողմից հաստատված ստրուկտուրայի առկայության պայմաններում, նախագծային կազմակերպությունների և պատվիրատուների փորձունեության նկատմամբ պետշինի պատշաճ հսկողություն չլինելու հետևանքով, փաստորեն առաջացել է նոր տարերային ստրուկտուրա, և խախտվել են բնակարանային շինարարության սահմանված պլանային միջին արժեքն ու շենքերի հարկայնությունը:

Անհրաժեշտ է, վերջապես, ապահովել մեր քաղաքների և ավանների կառուցապատման իրական կոմպլեքսայնությունը՝ ճիշտ լուծելով արդյունաբերական և բնակելի գոտիների կապի, տրանսպորտի, կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավման, կանաչապատման և այլ հարցեր:

Հարկավոր է խիստ բարձրացնել արդյունաբերական ձեռնարկությունների նախագծման որակը, ապահովել նախագծվող արտադրություններում նորագույն տեխնոլոգիայի, ժամանակակից բարձր արտադրողական սարքավորումների և գիտության ու տեխնիկայի մյուս նվաճումների ներդրումը: Հարկավոր է ապահովել նախագծերի էքսպերտիզայի հետագա բարելավումը, բարձրացնել պահանջկոտությունը նախագծման նորմաների պահպանման նկատմամբ, հաղթահարել սուբյեկտիվիզմը նախագծերի գնահատման հարցում:

Հարկավոր է, վերջապես, որ բոլոր նախահաշիվները ճշգրիտ սահմանեն օբյեկտների իսկական արժեքը:

Առանձնահատուկ ուշադրություն պետք է նվիրվի նախագծային ինստիտուտների նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը, դրանք բարձրորակ կադրերով կոմպլեկտավորելուն, նորագույն նախագծային, էլեկտրոնային-հաշվողական և այլ տեխնիկայով ապահովելուն:

Անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել՝ վերացնելու կրկնորդումը նախագծային կազմակերպությունների աշխատանքում, առավելագույն չափով մասնագիտացնելու և կոոպերացնելու դրանց աշխատանքը: Շարունակել դրանց կառուցվածքի խոշորացումն ու կատարելագործումը՝ ստեղծելու քաղաքաշինության, գյուղական շինարարության և այլ ճյուղերի մասնագիտացման, կոմպլեքսային նախագծային և գիտահետազոտական ինստիտուտներ:

Մեր հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման կենսագործումը լիովին պայմանավորված է նրանով, թե մինիստրությունները, գերատեսչությունները, նախագծային, շինարարական, մոնտաժային և մատակարարող կազմակերպությունները որքան նպատակասլաց և ժամանակին կիրագործեն կապիտալ շինարարության բարելավման հարցերի կոմպլեքսը: Միայն բոլոր օղակների անթերի աշխատանքը, կուսակցական կազմակերպությունների մշտական մասնակցության և ղեկավարության պայմաններում, հնարավորություն կընձեռի կատարելու հիշյալ որոշմամբ սահմանված առաջադրանքները:

Այս ֆոնի վրա ակնառու և ցայտուն երևում է աշխատողների մի ուրիշ
կատեգորիա, որոնց մեջ դեռևս հիմնավորապես առկա է աշխատանքի ու ղե-
կավարման հնացած մեթոդների իներցիան, դանդաղ է հեղաբեկվում հոգեբա-
նությունը նոր պահանջների ոգով, տիրում է որոշ ժամանակ սպասելու և զգու-
շությամբ շուրջը նայելու մտայնությունը, թե հետագայում ինչպես կզարգանան
իրադարձությունները և ըստ այդմ որոշելու իրենց վարքագիծը:

Այդպիսի ինքնաապահովագրական անձեռնհեռնրեցությունը, որն արտա-
հայտվում է ղեկավարության ոճի ու մեթոդների ծայրահեղ դանդաղ վերակա-
ռուցման ու կատարելագործման մեջ, հաճախ քողարկվում է Կենտկոմի հուն-
վարյան պլենումի ոգին պաշտպանելու վերաբերյալ քաղաքական ճոռոմաբա-
նությամբ ու ներբողներով:

Մեզ մոտ երևան է եկել նաև ղեկավար աշխատողների մի այլ կատեգո-
րիա, որոնց աշխատանքն ու վարքագիծը, մեղմ ասած, այնքան էլ չեն նպաս-
տում Կենտկոմի կարևոր միջոցառումների հաջող իրականացմանը: Ճիշտ է,
նրանց թիվը փոքր է, բայց պրոֆիլակտիկայի նպատակով արժե այդ մասին
ասել:

Նրանցից ոմանք ամենայն կրքոտությամբ հոգում են իրենց իրավունքների
մասին, բայց նույնքան անտարբերությամբ են վերաբերում իրենց ուղղակի
պարտականություններին, մոռանալով կամ, ավելի վատ, չհասկանալով այն
տարրական ճշմարտությունը, թե, վերջին հաշվով, իրավունքները տրվում են
ոչ միայն և ոչ այնքան տվյալ ղեկավար անհատին պահպանելու, այլ ամենից
առաջ նրա համար, որ աշխատողը լրիվ և անշեղորեն կատարի իր պարտա-
կանությունները: Պարտականությունների և իրավունքների հասկացություննե-
րի մեջ առաջնայինի և երկրորդայինի շփոթումը խանգարում է գործին, աշ-
խատողներին դաստիարակում պասիվության: Կան նաև աշխատողներ, որոնք
փոխանակ ակտիվ պայքար մղելու բացասական երևույթների դեմ, բավարար-
վում են վերհուշերով, թե «դեռ այսինչ ժամանակ մենք այդ մասին ասել ենք»,
մոռանալով, որ այժմ հարկավոր է գործել, այն էլ կոնկրետ և ակտիվ գործել:

Եվ, վերջապես, այն առանձին աշխատողների մասին, որոնք նույնպես
խուսափում են իրենց պարտականություններից, բայց միայն այն տարբերու-
թյամբ, որ սրանք, անգործության մատնվելով, իրենց իրավունք են վերապա-
հել, ինչպես ասում են, հեռվից դիտելով՝ քննադատել տեղերում աշխատող
ընկերներին, ավելի ճիշտ՝ տարվել քննադատամոլությամբ: Ընդ որում, նրանց
մեջ քիչ չեն այնպիսիները, որոնք հենց իրենք են կոչված իրագործելու Հա-
յաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի նախատեսած միջոցառումները: Այդ
մարդիկ հիմնականում հանդես են գալիս ու հավանություն տալիս պլենումի
որոշումներին, բայց մյուս կատարողներին քննադատում են այն դիրքերից, թե
«կարելի էր ավելի լավ անել», ինքնակամորեն ձերբազատվելով պլենումի
որոշումների կատարման պարտականություններից: Այդ «բարյացակամները»
մոռանում են, որ իրենց անգործությամբ և մանիլովյան հոգեբանությամբ
գլորվում են քաղաքական քաղքենիության ճահիճը: Ոչ ոք իրավունք չունի
մտածելու, թե պայքարը պետք է մղեն ուրիշները, իսկ ինքը կարող է ընդդի-
մախոսի պատմուճան հագնել կամ վերահսկիչ լինել, նայել և յուրովի գնահա-
տել արդյունքները՝ մատը-մատին չխփելով հենց նույն այդ պայքարի կազմա-
կերպման համար:

Այստեղ ինչպե՞ս չհիշատակել Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «...միշտ
կարող են գտնվել մարդիկ, որոնք ընդունակ են հիվանդանալու դժտություն-
ների, բամբասանքների, ասեկոսների հիվանդությամբ, միշտ կարող են հայտ-
նվել մարդիկ, որոնք շատ վատ են կատարում Կենտրոնական կոմիտեի կամ
համագումարի կողմից հանձնարարված ֆունկցիան, բայց շատ դյուրությամբ
են խոսում այն մասին, որ կուսակցության մյուս անդամները անբավարար են
կատարում մյուս ֆունկցիաները: Ընկերները այդ մարդկանց հաճախ կարող
են լրջորեն մինչև վերջ լսել անփորձությունից, հետաքրքրասիրությունից, թու-
լակամությունից դրդված: Իսկ իրականում պետք է նման մարդկանց ոչ թե
մինչև վերջ լսել, այլ տեղն ու տեղը նրանց ընդհատել... քանի որ այդ հիվան-



դության դեմ պայքարելու միակ միջոցն ամեն տեսակ հավակնությունների
անհապաղ և ամենաանողոք խափանումն է»:

Կենտկոմի պլենումը պետք է վճռաբար պահանջի խախտող դիրքերում
կանգնած նման ընկերներից ակտիվ ու կոնկրետ գործով կուսակցական և
պետական պատշաճ կարգ ու կանոն հաստատել աշխատանքի իրենց ասպա-
րեզներում, գործնականում ցույց տալ, թե ինչպես պետք է շտկել դրությունը,
այլ ոչ թե մտմտալ բարի ցանկություններով ու խրատական հորդորներով:

Յուրաքանչյուր կոմունիստ, որտեղ էլ նա աշխատելիս լինի և ինչպիսի
պոստ էլ գրավի, պետք է անի իր կարողությունների առավելագույնը Հա-
յաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումները կատարե-
լու համար, մեծագույն պահանջկոտությամբ վերաբերվի ինքն իրեն, ինքնա-
քննադատաբար գնահատի սեփական աշխատանքի արդյունքները, իր բոլոր
ուժերով օգնի առաջադրված խնդիրների իրականացմանը:

Մեզ հարկավոր են ոչ թե նվնվացող ուղեկիցներ, այլ իսկական, կոփված
քաղաքական մարտիկներ, որոնք ցանկանում և կարողանում են աշխատել կու-
սակցական քաղաքականության իրականացման համար, գործնական պայքար
մղել կարգապահության խախտումների, բացասական երևույթների և դրանց
կրողների դեմ, մարտիկներ, որոնք կանգնած են քննադատության և ինքնա-
քննադատության կուսակցական դիրքերում, որի հիմնական դրույթները հստակ
շարադրված են «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում
քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի
որոշման մեջ:

Մենք ամենքս պետք է սովորենք պայքար կազմակերպել սխալների ու
թերությունների դեմ, անձնապես անհանդուրժողության ակտիվ դիրք գրավել
այն ամենի հանդեպ, ինչ հակասում է մեր կոմունիստական իդեալներին, մեր
բարոյական պատկերացումներին:

Կոմունիստների, ղեկավար աշխատողների, մեր հասարակության բոլոր
անդամների դիրքը չպետք է լինի պասիվ-հայեցողական, չպետք է լինի այս
կամ այն բացասական երևույթը խոսքով դատապարտելու դիրք, այլ լինի ակ-
տիվ ու ներփործուն դիրք, որը նպաստի բացասական փաստերի դեմ մղվող
պայքարում կոնկրետ և արդյունավետ միջոցառումների իրականացմանը:

Անկախ այն բանից, թե ինչին է վերաբերում խոսքը,— արտադրության
կազմակերպման թերությունները վերացնելուն, սոցիալիստական սեփակա-
նության պահպանությունն ապահովելուն, շռայլության, անտնտեսվարության,
խուլիգանության դեմ պայքարելուն, բյուրոկրատիզմը և քաշքշուկը կամ այլ
արատներ մերկացնելուն,— մենք պետք է ցուցաբերենք հաստատուն հետևողա-
կանություն, կուսակցական և քաղաքացիական բարձր ակտիվություն, գործը
մինչև վերջ հասցնելու, այնքան ժամանակ պայքարելու հմտություն, մինչև
որ այն հաջողությամբ պսակվի:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունները, կուսակցական կո-
միտեները պետք է յուրաքանչյուր կոմունիստի, կոլեկտիվի, հասարակության
յուրաքանչյուր անդամի դաստիարակեն լենինյան այն պահանջի ոգով, որ
թերությունների դեմ հարկավոր է պայքարել մինչև վերջ, երբեք թեաթափ չլի-
նել դժվարություններից, գործը հասցնել մինչև վերջ, մինչև նկատված թերու-
թյան, սխալի կամ արատի իսպառ վերացումը:

Եվս մի հանգամանքի մասին: Կենտկոմի հունվարյան պլենումի ցուցում-
ներին համապատասխան, կուսակցական և սովետական մարմինները սկսել են
ավելի ուշադիր և սիստեմատիկաբար վերահսկել կադրերի աշխատանքը, ի
հայտ բերել եղած թերությունները, վրիպումներն ու սխալները: Դա լավ է, և
այդ աշխատանքը պետք է շարունակել: Բայց, դրա հետ մեկտեղ, գործի շահե-
րը պահանջում են ասել, որ այդ հարցերը քննարկելիս պետք է ցուցաբերել
առավելագույն ուշադրություն, մանրակրկիտ կերպով ուսումնասիրել և գնա-
հատել աշխատողի թերությունների ու սխալների բնույթը, էությունը, տեսնել,
թե ի՛նչ ֆոնի վրա են դրանք տեղ գտել, արդյոք դրանք նրա գործունեության
ոճի՞ց են բխում, արդյոք դրանք նրան բնորո՞շ են, թե՞ մասնավոր, էպիզոդիկ

*երևույթ են: Սա ասվում է, որպեսզի պահանջված դեպքում աչքաթող չարվի դաստիարակչական մոմենտը, որպեսզի սուբյեկտիվ կամ այլ նկատառումներով կադրերը անհիմն կերպով հունից չհանվեն:*

*Քննադատաբար վերլուծելով մեր աշխատանքը իր բոլոր կողմերով, տեսնելով այն դրական միտումները, որոնք ակնհայտորեն դրսևորվում են կուսակցական կազմակերպության և հանրապետության կյանքի բոլոր ոլորտներում, մենք պետք է հաստատ նպատակ դնենք՝ մեր աշխատանքը հասցնել նոր, ավելի բարձր աստիճանի:*

*Վերջին ամիսների աշխատանքի պրակտիկան ակնառու ցույց է տալիս, որ, չնայած Կենտկոմի հունվարյան պլենումի միանգամայն պարզ ու սկզբունքային ցուցումներին, որոնք հիմնված են ՍՄԿԿ Կենտկոմի համապատասխան որոշումների վրա, այնուամենայնիվ, մեր կադրերի որոշ մասը և նրանց կողմից ղեկավարվող մարմինները չեն կարողացել ինչպես հարկն է իրականացնել դրանք:*

*Ինչո՞ւմն է բանը: Գուցե այնքան մեծ ցանկություն ու ձգտում չի՞ եղել: Ո՛չ, ցանկություն ու ձգտում եղել է: Իրականում բանն այն է, որ, ինչպես ասվեց հունվարյան պլենումում, ամեն ինչ ներելու երբեմնի իրադրությունը, անտարբերության իներցիան, աշխատանքի հնացած ոճի ու մեթոդների իներցիան այնքան հիմնավորապես է ամրակայվել աշխատողների մի մասի շրջանում, որ նրանք չեն կարողանում լիովին դուրս գալ այդ վիճակից: Դա հավասարապես վերաբերում է նաև կուսակցության Կենտկոմի ապարատի, հանրապետության Մինիստրների սովետի, բաժինների, շրջկոմների, մինիստրությունների և գերատեսչությունների առանձին աշխատողների:*

*Ուրեմն, խոսքը պետք է վերաբերի այն բանին, որ սովորեցնենք ընկերներին, նրանց ուշադրությունը բևեռենք աշխատանքային նոր տեսանկյունի, որպեսզի նրանք կարողանան մերժել հնացածը և տեսնել նորը, կարողանան ընդհանրացնել պրակտիկան և աշխատեն կուսակցության պահանջներին համապատասխանող նոր մեթոդներով:*

*Եթե ամփոփելու լինենք, ապա կարելի է ընդհանրացված ասել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, ամուր հենվելով հանրապետության կուսակցական կազմակերպությունների և աշխատավոր մասսաների քաղաքական աճած ակտիվության վրա, հստակորեն տեսնելով թերությունները ու բացերը, ինչպես նաև դրանց պատճառները, լենինյան սկզբունքայնությամբ, հաստատակամությամբ և գործարարությամբ կիրականացնի իր ղեկավար դերը, կշարունակի իր կազմակերպական աշխատանքը՝ կուսակցական, սովետական, տնտեսական և հասարակական բոլոր կազմակերպությունների գործունեությանն ուղղություն տալու նպատակով և աշխատավորների ստեղծագործական ջանքերը կմոբիլիզացնի՝ բարելավելու գործերի վիճակը հանրապետության հասարակական-քաղաքական և տնտեսական կյանքի բոլոր ոլորտներում, հաջողությամբ կատարելու կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության առաջադրանքները:*

*Ընկերնե՛ր: Սովետական Հայաստանի կուսակցական կազմակերպությունը և աշխատավորները, իրագործելով կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումները, լի են հայրենասիրական ձգտումով՝ կոնկրետ մեծագործություններով արժանավայել դիմավորելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության հերթական XXV համագումարը: (ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):*

*ՍՄԿԿ-ի քաղաքականության և գործունեության բազմամյա փորձի հիման վրա Հայաստանի կոմունիստները, բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, պարզ պատկերացնում են, որ կուսակցության առաջիկա համագումարը նոր, պայծառ հորիզոններ կբացի, կմշակի ստեղծարար աշխատանքի նոր հոյակապ ծրագիր՝ հանուն սովետների երկրի, նրա բոլոր հանրապետությունների, նրա բոլոր ժողովուրդների հետագա ծաղկման:*

*Այժմ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում տիրում է քաղաքական և աշխատանքային մեծ ոգևորության, ստեղծագործական ոգեշնչման և բարձր խանդավառության մթնոլորտ, որոնց հիման վրա է՛լ ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունը՝ յուրաքանչյուր ձեռնարկության և կազմակերպության, սովխոզի և կոլտնտեսության կողմից իններորդ հնգամյակի եզրափակիչ տարվա պլաններն ու առաջադրանքները հաջողությամբ և ժամկետից շուտ կատարելու համար, որով հիմք է ստեղծվում տասներորդ հնգամյակում կատարվելիք հաջող աշխատանքի համար:*

*Արժեքավոր նախաձեռնությամբ են հանդես եկել Երևան քաղաքի Լենինյան շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները. նրանք լիովին վերանայել են հնգամյակի եզրափակիչ տարվա համար իրենց՝ նախկինում հաստատված բնագծերը և սոցիալիստական բարձր պարտավորություններ ստանձնել «Հանուն աշխատանքի առավելագույն արտադրողականության ու գերազանց որակի» մարտական նշանաբանով: Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի վարպետներն ու երիտասարդ բանվորները դարձան աշխատանքի արտադրողականության անշեղ աճի և գերազանց որակի արտադրանքի ավելացման մրցության նախաձեռնողներ: Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի մեքենավար, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Օ. Գյուլմիսարյանի նախաձեռնությունը, որը կուսակցության համագումարի պատվին լրացուցիչ պարտավորություններ է վերցրել, այժմ լայն տարածում է գտնում ամբողջ ձեռնարկությունում: Հանրապետության աշխատավորների փառավոր գործերի շատ ու շատ օրինակներ կարելի է բերել:*

*Հանրապետության կուսակցական կազմակերպությունների մարտական խնդիրն է՝ ավելի կոնկրետ և ավելի կազմակերպված գլխավորել քաղաքական և աշխատանքային այդ խանդավառությունը, ավելի լայն թափ հաղորդել կուսակցության XXV համագումարի պատվին ծավալված սոցմրցությանը ու այն դիմավորել կոմունիստական շինարարության աշխատանքային նոր հաղթանակներով:*

*Ընկերնե՛ր: Թույլ տվեք ձեր անունից ՍՄԿԿ լենինյան Կենտկոմին հավաստիացնել, որ հանրապետության ամբողջ կուսակցական կազմակերպությունը և աշխատավորությունն իրենց բոլոր ջանքերը, ողջ եռանդն ու կամքը կգործադրեն ժողովրդատնտեսական պլանները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար և արժանավայել կդիմավորեն մեր փառապանծ կոմունիստական կուսակցության XXV համագումարը: (ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):*

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր

ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ գյուղատնտեսության հիմնական ճյուղերից է և, որոշակի իմաստով, Միությունում բնորոշում է մեր հանրապետության տեղն ու դերը հասարակական աշխատանքի բաժանման ասպարեզում:

Անցած տասնամյակների ընթացքում խաղողագործության բուռն զարգացման մասին են վկայում հետևյալ թվերը. 1913 թ. Հայաստանի ներկայիս տարածքում կար ընդամենը 9,2 հազար հեկտար խաղողի այգի, 1940 թ.՝ 16,3 հազար, իսկ վերջին 20 տարիների ընթացքում (1953—1973) այգիների տարածությունը կրկնապատկվեց և այժմ կազմում է շուրջ 35 հազար հեկտար:

Ընդ որում, եթե մի ժամանակ խաղողագործությունը գրեթե ամբողջովին տեղաբաշխված էր հանրապետության հարթավայրային շրջաններում, ներկայումս այն տարածվում է լեռնային և նախալեռնային շրջաններում և դառնում դրանց էկոնոմիկայի առաջատար ճյուղերից մեկը: Դարձյալ դիմելով վիճակագրությանը, տեսնում ենք, որ եթե 1953 թ. հիշյալ շրջաններում (նախալեռնային, հյուսիս-արևելյան գոտիներ, Եղեգնաձոր, Զանգեզուր) կար 4,3 հազար հեկտար խաղողի այգի, ապա այժմ արդեն դրանք անցնում են 13 հազարից և կազմում հանրապետության խաղողի այգիների ընդհանուր տարածության 37 տոկոսը:

Խաղողագործության դերը նշանակալի է գյուղի բնակչության զբաղվածության և եկամուտների մեջ: Բավական է ասել, որ անցյալ տարի հանրապետության կոլտնտեսությունները և պետական տնտեսությունները միայն պետությանը վաճառած խաղողի դիմաց ստացել են ավելի քան 52 մլն ռուբլի:

Այսուհանդերձ, նկատենք, որ խաղողագործության զարգացումը մինչև այսօր բնորոշվում է գլխավորապես քանակական ցուցանիշների՝ այգիների տարածության և համախառն բերքի աճով: Ցավոք, նույնը չի կարելի ասել որակական ցուցանիշների, մասնավորապես, հեկտարի բերքատվության, խաղողի շաքարայնության, ինչպես նաև արտադրության շահութաբերության մասին: Այժմ, երբ խաղողի այգիներն արդեն զբաղեցնում են հազարավոր հեկտար հողատարածություններ, առաջնակարգ խնդիր է դառնում այդ ճյուղի ինտենսիվացումը և տնտեսական արդյունավետության բարձրացումը:

Այս առումով նշենք ներկայումս խաղողագործության զարգացմանը բնորոշ երկու կարևոր առանձնահատկություն: Նախ, այդ ճյուղի համախառն բերքի ավելացումը ետ է մնում այգիների տարածության ավելացման տեմպերից. վերջին տասնամյակում (1965—1974) հանրապետության պտղաբերող հասակի խաղողի այգիների տարածությունը զգալիորեն ավելացավ և 24,8 հազար հեկտարից հասավ 29,2 հազարի: Մինչդեռ խաղողի համախառն բերքը փաստորեն գրեթե մնաց նույնը: Երկրորդ, այդ տարիներին զգալիորեն նվազել են նոր տնկվող այգիների տարածությունները: Եթե 1965 թ. նորատունկ խաղողի



այգիները Հայաստանում կազմում էին 11,3 հազար հեկտար, ապա 1973 թ. դրանց տարածությունը չէր անցնում 5,6 հազար հեկտարից: Այսպիսով, նոր այգիների հիմնադրման տեմպերը զգալիորեն նվազել են, որի հետևանքով առաջիկայում կնվազեն նաև խաղողի համախառն բերքի հավելաճի տեմպերը:

Եթե այս ամենին ավելացնենք խաղողի որակի և խաղողագործության շահութաբերության ցուցանիշների նվազումը, որին մենք դեռ կանդրադառնանք, ապա պարզ կդառնա, թե ինչու մեր հանրապետության գյուղատնտեսության այս կարևոր ճյուղի ներկա վիճակը լուրջ մտահոգություն է պատճառում գրեթե ամենքին, սկսած գինեգործներից մինչև անմիջական սպառողը: Այժմ աշխատենք վերլուծել խաղողագործության տնտեսական մի քանի հիմնական ցուցանիշներ և բացահայտել այդ ճյուղի տնտեսական ցածր արդյունավետությունը պայմանավորող հիմնական պատճառները:

ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆԸ մեր հանրապետությունում դրսևորվում է հատկապես նրա բարձր աշխատատարության մեջ: Ուստի, ամենից առաջ քննենք այս ճյուղի աշխատանքային և նյութական ծախսումների վիճակը վերջին տասնամյակի ընթացքում:

Աղյուսակ 1

Խաղողի արտադրության ծախքերի կառուցվածքը և շարժը հանրապետության կոլտնտեսություններում (1 հեկտ. այգու հաշվով)

| | 1961—1965 | 1966—1970 | 1971—1974 | 1961—1974 շարժը %-ներով |
|---|---|---|---|---|
| Բերքը մեկ հեկտարից | 59,3 | 66,3 | 69,0 | 116,3 |
| Աշխատանքային ուղղակի ծախսերը (մարդ-օր) | 208 | 190 | 207 | 99,5 |
| Աշխատանքի վարձատրության ծախսեր (ընդամենը) (ռուբլի) | 861 | 1408 | 1769 | 205,4 |
| Նյութական ծախսեր (ռուբլի) | 202 | 306 | 496 | 245,5 |
| Ընդամենը ծախսեր (ռուբլի) | 1063 | 1714 | 2265 | 213,1 |
| Աշխատանքային ծախսերի տես. կշիռը ընդհանուր ծախսերի մեջ (տոկոս) | 81,0 | 82,2 | 78,1 | — |
| Մեկ մարդ-օրվա միջին վարձատրությունը ճյուղում (ռուբլի) | 3,40 | 5,90 | 6,95 | 204,4 |

Ինչպես տեսնում ենք, մեկ հեկտար այգու վրա կատարած նյութական ծախսումների գումարը անցած տասը տարիների ընթացքում ավելացել է շուրջ 2,5 անգամ: Դա առաջին հերթին հետևանք է այն բանի, որ տնտեսություններն ավելի շատ միջոցներ են հատկացնում մեքենաների, պարարտանյութերի, զանազան թունաքիմիկատների գնման համար: Ինչ վերաբերում է կենդանի աշխատանքի ծախսումներին, ապա թեև նշված տարիներին դրանց ֆիզիկական ծավալը (մարդ-օրերի ծախսերը), մեկ հեկտար այգու հաշվով, որոշ չափով նվազել է, այնուամենայնիվ, մեկ մարդ-օրվա ճյուղային միջին վարձատրության զգալի ավելացման հետևանքով, խաղողագործության բոլոր աշխատանքային և նյութական ծախսերի գումարն աճել է ավելի քան 2 անգամ: Ընթացիկ հնգամյակում մեկ հեկտարի հաշվով, բոլոր ծախսումները կազմեցին 2.267 ռուբլի, իսկ մեկ տոննա արտադրանքի հաշվով՝ 314 ռուբլի, ընդ որում, կենդանի աշխատանքի ծախսումների բաժինը հասնում է 78—80 տոկոսի: Համեմատության համար նշենք, որ ՍՍՀՄ խաղողագործական տնտեսությունների մեկ տոննա խաղողի միջին ինքնարժեքը կազմում է 178 ռուբլի, որից աշխատանքային ծախսերի բաժինը՝ 73,4 տոկոս, իսկ հացահատիկային տնտեսության բոլոր ծախսերի մեջ կենդանի աշխատանքի ծախսերը կազմում են ընդամենը 34—35 տոկոս:

Այսպիսով, վերը բերած տվյալները վկայում են, որ կոլտնտեսություններում խաղողագործության ծախքերի կառուցվածքը (կենդանի և առարկայացած

զգալի ավելացմանը: Ընդ որում, ինչպես ցույց են տալիս մոտավոր հաշվումները, արտադրանքի որակի բարձրացումն այս ճյուղում, այսինքն՝ գինեգործության մեջ, երեք-չորս անգամ ավելի շատ լրացուցիչ եկամուտներ է խոստանում, քան ցույց է տրված վերը բերված հաշվարկում, որը վերաբերում է անմիջական արտադրողների՝ գյուղատնտեսական ձեռնարկությունների եկամուտներին:

Ներկայումս մեկ հեկտար խաղողի այգուց ստանում են, միջին հաշվով, 50—55 ցենտներ բերք՝ 18—19 աստիճան շաքարայնությամբ: Այլ կերպ ասած, լավագույն դեպքում ստացվում է 10,5 ցենտներ խաղողա-շաքարի բերք ($55\times0,19=10,5$): Մինչդեռ կյանքը վկայում է, որ այգեգործությունը նորմալ ինտենսիվությամբ վարելու դեպքում յուրաքանչյուր հեկտարից կարելի է ստանալ առնվազն 100 ցենտներ խաղող՝ 23—25 աստիճան շաքարայնությամբ: Խաղողա-շաքարի բերքն այս դեպքում հեկտարից կկազմի 23—25 ցենտներ:

Ի՞նչն է խանգարում այս հսկայական ռեզերվների օգտագործմանը:

Ամենից առաջ անհրաժեշտ է արագորեն հաղթահարել խաղողագործության տեխնիկական հիմքի հետամնացությունը, ձեռքի աշխատանքի տիրապետությունը, որը հակասում է գյուղական կյանքի ժամանակակից սոցիալական տեղաշարժերին (երիտասարդությունը չի հրապուրում ձեռքի ծանր աշխատանքը) և դժվարին կացության մեջ է դնում այս ճյուղի հետագա զարգացումը: Մինչև այսօր չի ստեղծվել խաղողագործության հիմնական պրոցեսների մեքենայացման համար անհրաժեշտ մեքենաների համակարգ, որը և արգելակում է աշխատանքի արտադրողականության աճը, ձեռքի աշխատանքի դուրս մղումը: Դրան ավելանում են թմբային այգիների մեքենայացման դժվարությունները: 1970 թ. տվյալներով հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում խաղողի այգիների շուրջ կեսը տնկված է շարային սիստեմով. կոլտնտեսություններում 28 և պետական տնտեսություններում 73 տոկոսը, իսկ մնացած այգիները անսիստեմ են:

Պետք է գոհունակությամբ նշել, որ թմբային այգիները հանրապետությունում այժմ գրեթե ամենուր վերակառուցվում են և դրանց տեղը հիմնվում նոր, շարային այգիներ: Այնուամենայնիվ, մեր կարծիքով, վերակառուցման աշխատանքները ընթանում են ոչ բավարար տեմպերով և պետք է արագացվեն այն հաշվով, որպեսզի այդ այգիներն առաջիկա 5—10 տարում վերածվեն շարային (հենասյունային) այգիների, դրանով իսկ պայմաններ ստեղծվեն խաղողագործության արագ մեքենայացման համար:

ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ մյուս կարևորագույն գործոնը կապված է այս ճյուղի նկատմամբ կիրառվող տնտեսական քաղաքականության և ուղղակի կազմակերպական հարցերի կարգավորման հետ:

Խաղողի մթերումների և մթերագների գործող համակարգը հիմնավորված համարել չի կարելի նախ այն պատճառով, որ գները չեն արտահայտում տվյալ ճյուղի հանրորեն անհրաժեշտ ծախքերը, և երկրորդ, դրանք, ինչպես արդեն նշվել է մեր մամուլում, չեն խթանում արտադրանքի որակի բարձրացմանը:

Այս առթիվ հարկ ենք համարում ուշադրություն դարձնել գյուղատնտեսական արտադրանքի մթերումների պլանավորման և մթերագների նոր համակարգի կիրառման այն դրական փորձի վրա, որը կուտակվել է մեր երկրում վերջին տարիներին:

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումը սահմանեց գյուղատնտեսական արտադրանքի մթերումների կայուն, մի շարք տարիների համար անփոփոխ առաջադրանք (նախկինում գործող «սահող» առաջադրանքների պրակտիկայի փոխարեն), որը կոլտնտեսություններին և սովխոզներին հնարավորություն է տալիս ճիշտ պլանավորել արտադրության հեռանկարային զարգացումը, ճիշտ զուգակցել յուրաքանչյուր տնտեսության շահերը՝ համաժողովրդական շահերի հետ: Միաժամանակ, որպեսզի կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես շահագրգռված լինեն ավելի շատ արտադրանք վաճառել պետությանը, արտապլանային վաճառքի համար սահմանվեց 1,5 անգամ ավելի բարձր գին (հիմնական մթերագնի համեմատ), խրախուսական կարգ սահմանվեց հացահատիկային կուլտուրաների նկատմամբ, իսկ հետագայում հաշվի առնելով դրա դրական արդյունքները, ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թ. հոկտեմբերյան պլենումը առաջարկեց ո՛չ միայն պահպանել մթերումների վերոհիշյալ կարգը նոր (1971—1975 թթ.) հնգամյակում, այլև տարածել այն գյուղատնտեսական մի շարք այլ մթերքների վրա: Դա ցույց է տալիս, որ մթերումների և մթերման գների նոր համակարգը կարևոր սկզբունքային նշանակություն ունի ո՛չ միայն մեկ ճյուղի, այլև ամբողջ գյուղատնտեսության զարգացումը տնտեսապես խթանելու համար:

Մթերումների նոր համակարգի դրական ազդեցությունը, ամենից առաջ, կարելի է տեսնել հացահատիկային տնտեսության օրինակով: Բնորոշ է այն փաստը, որ անցյալ հնգամյակի համար սահմանված հացահատիկի մթերումների միջին տարեկան կայուն առաջադրանքը զգալիորեն գերակատարվեց՝ հենց տնտեսությունների կողմից ազատ, արտապլանային վաճառքի հաշվին: Մյուս կողմից, հացահատիկային տնտեսության միջին շահութաբերությունը ՍՍՀՄ կոլտնտեսություններում 85 տոկոսից բարձրացավ մինչև 100—120 տոկոս: Դա նշանակում է, որ հացահատիկային տնտեսություններն իրենց արտադրանքը պետությանը վաճառելուց ստանում են ոչ միայն միջին նորմալ զուտ եկամուտ, այլև որոշ լրացուցիչ զուտ եկամուտ (դիֆերենցիալ ռենտա), որն իրական խթան է այս ճյուղի հետագա ինտենսիվացման համար:

Ցավոք, նույնը չենք կարող ասել խաղողագործության մասին, որի զարգացումն ընթանում է ավելի բարդ բնատնտեսական պայմաններում: Խաղողի այժմ գործող մթերագինը հնարավորություն է տալիս հատուցելու արտադրության ծախքերը և , լավագույն դեպքում, այսինքն՝ բարձր բերքատվության տարիներին, ապահովելու 40—45 տոկոս շահութաբերություն, իսկ սովորական կամ միջին բերքատվության տարիներին՝ հազիվ դրա կեսը (ռենտայի իրացման մասին խոսք լինել չի կարող): Այլ կերպ ասած, խաղողի մթերումների և մթերագների այսօրվա համակարգը չի ապահովում նորմալ եկամուտներ խաղողագործության ընդլայնված վերարտադրության համար, և հատկապես, դժվարություններ է ստեղծում նոր, ավելի բարդ բնական պայմաններ ունեցող շրջաններում այդ ճյուղի զարգացման համար:

Մի շարք տարիների տվյալների ուսումնասիրությունը վկայում է, որ Անդրկովկասը, այդ թվում Հայաստանը, աչքի է ընկնում մեկ հեկտար խաղողի այգու և մեկ տոննա արտադրանքի վրա կատարվող առավել բարձր ծախքերով. մեկ տոննա խաղողի հասարակական արժեքը 570—600 ռուբլի է, իսկ օպտիմալ շահութաբերություն ապահովող գինը (օպտիմալ գինը)՝ ոչ պակաս, քան 450—500 ռուբլի: Ներկայումս գների այդպիսի օպտիմալ մակարդակին են մոտավորապես հասել Վրացական ՍՍՀ-ում:

Մենք չենք առաջարկում խաղողի մթերագնի հախուռն բարձրացում, ինչպես դա կատարվեց 1969 թվականին (որն, ի դեպ ասած, ըստ էության չլուծեց խաղողի գնի պրոբլեմը): Սակայն, մեր կարծիքով, Հայաստանի գյուղատնտեսության գլխավոր ճյուղերի՝ խաղողագործության ու պտղաբուծության նկատմամբ վաղուց հասունացել է մթերումների և մթերման գների նոր համակարգի կիրառումը, որը պահանջում է մթերումների կայուն առաջադրանքի սահմանում առնվազն մեկ հնգամյակի համար և խրախուսական՝ 1,5 անգամ բարձր գնի կիրառումը պլանից ավելի վաճառվող արտադրանքի դիմաց: Մթերումների այդ նոր համակարգերի կենսագործումը այգեգործության նկատմամբ առավել ևս կարևոր է, եթե հաշվի առնենք այդ ճյուղերի էքստենսիվ զարգացման խիստ սահմանափակ հնարավորությունները:

Բացի դրանից, անհրաժեշտ է գների միջոցով ավելի ակտիվորեն խթանել խաղողի շաքարայնության բարձրացումը: Այս խնդիրը լուծելու համար նպատակահարմար է բարձրացնել հավելավճարի չափը և դերը՝ սահմանված կոնդիցիայից բարձր շաքարի պարունակության համար:

Մթերումների և մթերման գների առաջարկվող սկզբունքի կիրառումը, մեր կարծիքով, արդյունավետ ու ակտիվ կերպով կանդրադառնա խաղողագործության տնտեսական ցուցանիշների վրա և կունենա առնվազն երկու կարևոր առանձնահատկություն: Առաջին, փաստացի իրացման գինը կբարձրանա ոչ թե արտադրության փիճակից անկախ, այլ ճիշտ այն չափով, որչափ կավելանա խաղողի արտապլանային վաճառքը պետությանը* և նրա շաքարայնությունը: Երկրորդ, քանի որ այս դեպքում մթերումների ընդհանուր ծավալի մեջ կավելանա բարձրորակ արտադրանքի տեսակար կշիռը, ապա և դա դրականապես կանդրադառնա վերամշակող արդյունաբերության թողարկած արտադրանքի տեսականու վրա: Կավելանա տեսակավոր լավագույն գինիների արտադրությունը, իսկ դա իր հերթին շրջանառության հարկի միջոցով, զգալի լրացուցիչ եկամուտներ կբերի հանրապետության բյուջեին, որը և, վերջին հաշվով, կփոխհատուցի խաղողի մթերագնի բարձրացման վրա ծախսված լրացուցիչ միջոցները**:

Խաղողագործության արդյունավետության և մասնավորապես արտադրանքի որակի բարձրացման կարևորագույն գործոններից մեկը կապված է պլանավորման պրակտիկայի կատարելագործման հետ: Պլանավորման ներկա պրակտիկայի պայմաններում գյուղատնտեսական ձեռնարկությունների աշխատանքի գնահատման հիմնական ցուցանիշը, ըստ էության, արտադրանքի և մթերումների ծավալն է, իսկ որակը, որպես տնտեսական կատեգորիա, գրեթե դուրս է մնացել կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեության գնահատման ասպարեզից: Մինչդեռ արտադրանքի որակը նրա հանրային օգտակարության կարևորագույն չափանիշն է և պետք է գտնվի պլանավորող ու դիրեկտիվ մարմինների ուշադրության կենտրոնում: Այս տեսակետից, ժամանակն է պլանավորել ոչ միայն խաղողի համախառն բերքը և մթերումների ծավալը, այլև նրա որակը, օրինակ՝ նվազագույն շաքարայնությունը և մեկ հեկտար այգու հաշվով խաղող-շաքարի քանակը, ելնելով յուրաքանչյուր բնական գոտու կոնկրետ պայմաններից: Հասկանալի է, որ բազիսային նորմալ շաքարայնությունը տարբեր շրջանների համար տարբեր կլինի:

Վերը նշված ընդհանուր տնտեսական միջոցառումներից բացի, հարցի լուծումը պահանջում է նաև յուրաքանչյուր տնտեսության ներսում անհրաժեշտ տնտեսական-կազմակերպական միջոցառումներ՝ խաղողի բարձր շաքարայնության նյութական խրախուսման ասպարեզում: Միայն այս դեպքում խաղողագործական տնտեսությունները և դրանց աշխատողները շահագրգռված կլինեն ոչ միայն քանակական, այլև արտադրանքի որակական ցուցանիշների կատարումով:

Այսպիսով, խաղողագործության տնտեսական արդյունավետության բարձրացման կարևոր խնդիրները կարելի է բաժանել երկու մասի. ա) հեռանկարային բնույթ ունեցող և համեմատաբար երկար ժամանակ պահանջող (օրինակ, այգիների վերակառուցումը) և բ) խաղողի բերքահավաքի ժամկետների հարցի լուծումը, ինչպես նաև մթերումների և մթերման գների համակարգի կատարելագործումը: Այս վերջին խմբի հարցերը, մեր կարծիքով, վաղուց արդեն հասունացել են, ուստի անմիջական միջամտություն և լուծում են պահանջում հանրապետության ղեկավար մարմինների կողմից: Միաժամանակ չի կարելի աչքաթող անել նաև խաղողագործության զարգացման հեռանկարային խնդիրների լուծումը, որոնց պետք է ձեռնամուխ լինել արդեն այսօր:

* Պարզ է, որ այս դեպքում էական նշանակություն է տանում արտադրանքի հիմնավորված պլանային առաջադրանքների սահմանումը: Արտադրանքի պլանային առաջադրանքները, մեր կարծիքով, նպատակահարմար է սահմանել ելնելով ընդունելով վերջին հինգ տարիների խաղողի միջին բերքատվությունը: Խրախուսագինը այս դեպքում պետք է վճարվի այդ միջինից ավելի բերք ստանալու և պետությանը վաճառելու դիմաց:

** Հայտնի է, որ մեկ դեկալիտր թունդ գինիների մանրածախ իրացման գինը 2,6 անգամ բարձր է սեղանի գինիների համեմատ, մինչդեռ պետության կենտրոնացված եկամուտը (շրջանառության հարկ) մեկ դեկալիտր թունդ գինիների վաճառքից քսան անգամ գերազանցում է սեղանի գինիների շրջանառության հարկին:

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼՈՒ ՖՈՒՆԿՑԻՈՆԱԼ-ԿԱՌՈՒՑՎԱԾՔԱՅԻՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Լ. Գ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ ու սովետական կառավարությունը մեծ նշանակություն են տալիս արդյունաբերական ձեռնարկությունների կառավարումը կազմակերպելու ֆունկցիոնալ-կառուցվածքային հիմունքների մշակմանը և արմատավորմանը: Դեռևս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության արշալույսին Վ. Ի. Լենինը նշել է. «Սոցիալիզմը ծնունդ է խոշոր մեքենական ինդուստրիայի: Եվ եթե սոցիալիզմ կենսագործող աշխատավոր մասսաները չկարողանան իրենց հիմնարկությունները այնպես հարմարեցնել, ինչպես պետք է աշխատի խոշոր մեքենական ինդուստրիան, այն ժամանակ սոցիալիզմ իրագործելու մասին խոսք անգամ լինել չի կարող» (Երկեր, հ. 27, էջ 250—251):

ՍՄԿԿ XXIV համագումարը, անդրադառնալով արդյունաբերության կառավարման հարցին, ընդգծեց, որ «Նոր հնգամյակի ընթացքում լուծվելիք կարևորագույն խնդիրներից մեկը ժողովրդական տնտեսության կառավարման կառուցվածքի հետագա ռացիոնալացումն է:

Առանձին ճյուղերի առանձնահատկությունների համեմատ կառավարման նոր սխեմաները պետք է ընտրվեն պրակտիկ փորձի և գիտության տվյալների մանրազնին ուսումնասիրման հիման վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 225):

Սովետական գիտնականները վերջին տարիներին որոշակի գործ են կատարել արդյունաբերական ձեռնարկությունների կառավարումը կազմակերպելու ֆունկցիոնալ-կառուցվածքային հիմունքների մշակման ասպարեզում:

Վերլուծելով ձեռնարկության կառավարման սիստեմի կառուցման կամ կատարելագործման հետ կապված հարցերը, անհրաժեշտ է պարզ պատկերացնել կառավարման ֆունկցիոնալ սիստեմը, ինչպես նաև կազմակերպական կառուցվածքը:

Ա. Ֆայոլը, նշելով ձեռնարկության կառավարման վեց տեսակ գործողություններ (տեխնիկական, առևտրական, ֆինանսական, պահպանման, հաշվային և վարչական), առաջին անգամ վարչական ֆունկցիաները բաժանեց փուլերի, որոնք ժամանակի տեսակետից հաջորդում են մեկը մյուսին. կանխատեսում, կազմակերպում, կարգադրողականություն, համաձայնեցում և վերահսկողություն (А. Файоль. Учение об управление. Сб. «Научная организация труда и управления». М., «Экономика», 1965 г., стр. 362): Կանխատեսումը նա բնութագրել է որպես ապագայի ուսումնասիրում և գործողությունների ծրագրի սահմանում: Ավելի ուշ շրջանի հետազոտողները ճշգրտեցին ու լրացրին կառավարման հիմնական ֆունկցիան, նրանում առանձնացնելով երկու փուլ՝ պրոգնոզումը՝ որպես պլանավորման միջոց և բուն պլանավորումը: Առաջադրվել էին նաև կառավարման այլ հիմնական ֆունկցիաներ (ակտիվացում կամ փաստարկում): Վերահսկողության մեջ, որի տակ

Հարկավոր է նշել, որ այդ սկզբունքներից մի քանիսը հակասական են, ինչպես, օրինակ, հիերարխիկ կերպով միմյանց ենթակա օղակների նվազագույն քանակության ձգտելը և վերահսկողության մասշտաբի հաշվառումը: Ձգտելով փոքրացնել կառավարման մակարդակները, մենք ավտոմատ կերպով, եթե չենք փոխում կառավարման տեխնիկա-տեխնոլոգիական բազան, ստիպված ենք լինում ընդլայնել վերահսկողության մասշտաբները:

Գծային կառավարման դրական կողմը կարելի է համարել կամքի, աշխատանքի համար լրիվ պատասխանատվության միասնությունը, ղեկավարության միասնությունը՝ վերից վար: Այդ սկզբունքի բացասական կողմերը առաջին հերթին պետք է համարել բանիմաց մասնագետների բացակայությունը, քանի որ ղեկավարն իր կատարած ֆունկցիաների բերումով ստիպված է զբաղվել տարբեր բնույթի աշխատանքներով, որը նրանից պահանջում է խոր գիտելիքներ տարբեր բնագավառներում: Շատ դժվար է գտնել ղեկավար նման հատկություններով:

Դա էլ կյանքի կոչեց կազմակերպման մյուս սկզբունքը՝ ֆունկցիոնալ սկզբունքը, որի ակունքների մոտ է գտնվում Ֆ. Ա. Թեյլորի «գիտական մենեջմենտը»: Ֆունկցիոնալ սիստեմի էությունն այն է, որ յուրաքանչյուր մակարդակի գծային անձնակազմի աշխատանքը բաժանում են աշխատանքների մասնագիտացված տեսակների: Ինքը՝ Թեյլորը, արտադրամասի վարպետի աշխատանքի բաժանման հիման վրա կիրառել է ֆունկցիոնալ կառավարման սիստեմը: Բանվորներին փաստորեն ղեկավարում էին ութ վարպետներ: «Հորիզոնական մասնագիտացման» այս սկզբունքը հանգեցնում է որոշումների նախապատրաստման ավելի բարձր որակի, բայց առաջ է քաշում կոորդինացիոն աշխատանքների պրոբլեմները և, բացի դրանից, բացահայտ հակասության մեջ է գտնվում կարգադրողականության միասնության սկզբունքի հետ:

Արդյունավետ կենսագործման համար ֆունկցիոնալ սկզբունքը պահանջում է կատարել հետևյալ կանոնները.

ա) զուգահեռականության և կրկնորդման բացառումը ֆունկցիաների հըստակ դիֆերենցման հիման վրա.

բ) մասնագիտացված ֆունկցիայի հստակ որոշում. այստեղից էլ ֆունկցիոնալ սիստեմի օղակների հավասարաչափ ծանրաբեռնվածությունը.

գ) ստորաբաժանման ֆունկցիայի համապատասխանում նրա նպատակներին և այլն: Հարկավոր է նշել, որ ամեն մի ֆունկցիոնալ ծառայություն կառուցվում է գծային սկզբունքի հիման վրա, թեև այն կարող է միայն մեթոդական ու մեթոդոլոգիական ցուցումներ տալ գծային անձնակազմին՝ իր բնագավառում:

Քանի դեռ արդյունաբերական ձեռնարկությունները փոքր էին իրենց չափերով և ոչ բարդ՝ ղեկավարման տեսակետից, գերակշռում էր գծային սկզբունքը: Ֆունկցիոնալ սկզբունքը մաքուր ձևով չէր կիրառվում անգամ իր՝ Թեյլորի կողմից: Կառավարման կազմակերպման զարգացման տրամաբանական ավարտը հանդիսացավ գծային և ֆունկցիոնալ սկզբունքների օրգանական զուգակցումը՝ դրանց բոլոր դրական ու բացասական կողմերով: Գծային սկզբունքի հիմնական թերությունն այն է, որ հնարավոր չէ կոմպետենտ մասնագետներին օգտագործել կառավարման համար, իսկ ֆունկցիոնալ սիստեմի հիմնական թերությունն է մասնագիտացված կառավարչական աշխատանքների կոորդինացման պրոբլեմը, քանի որ կարգադրողականության պրոցեսը չափից դուրս մասնատվում է, ապա այստեղ փոխադարձաբար համասարակշռվում են: Գծային-ֆունկցիոնալ սկզբունքն այն էական հիմնակետն է, որի վրա կառուցվում է կառավարման կազմակերպական կառուցվածքը ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններում և միավորումներում:

# Լեզուն և ժամանակը

## ԱՅՍՊԵՍ ՉՊԵՏՔ Է ԹԱՐԳՄԱՆԵԼ

(ԶՐՈՒՅՑ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ ԽՄԲԱԳԻՐՆԵՐԻ ՀԵՏ)

ՀԱՐԳԵԼԻ ԳՐՉԱԿԻՑՆԵ՛Ր

Ձեզ քաջ հայտնի է, որ սովետական ժողովրդի պատմական առաջընթացում խոշոր դեր է խաղացել գիրքը և տակավին շարունակում է խաղալ: Դուք լավ գիտեք, միաժամանակ, թե որքա՜ն խստապահանջ է մեր ժամանակի ընթերցասեր միլիոնների բանակը: Կարիք կա՞ առանձնապես շեշտելու, թե որքան է ծավալվել ու զարգացել սովետական գրքի կուլտուրան, որն ամենքիս ուրախություն է պատճառում և մեր քաղաքացու հպարտության անփոխարինելի կռվաններից մեկն է:

Սակայն այս դեպքում կամենում ենք ձեր ուշադրությունը հրավիրել այն ցավալի իրողության վրա, երբ, բազմաթիվ բարձրորակ գրքերի հետ մեկտեղ, լույս են տեսնում մտքի ու լեզվի արտառոց խեղաթյուրումներով և սխալներով լի գրքեր:

Արդ, քանի որ կուսակցությունը գալիք հնգամյակը հռչակում է որակի հնգամյակ, ապա դա, անկասկած, վերաբերում է նաև գրքի, պոլիգրաֆիական արտադրության որակին: Մենք համոզված ենք, որ գրքի բարձրորակությունը գերազանցապես կարելի է ապահովել, եթե հրատարակչությունները ցուցաբերեն առավելագույն խստապահանջություն, սկզբունքայնություն և, որ գլխավորն է, գաղափարայնություն և բանիմացություն: Սա նշանակում է լուծել երկու հարց. հեղինակ կամ թարգմանիչ հաստատելիս, առաջնորդվել միայն տվյալ անձի մտավոր կարողությամբ, առանց որի պատկառազդու և հրապուրիչ գիրք չենք ստեղծի: Երկրորդ, գիրքը պետք է խմբագրի նա, ով օժտված է ո՛չ միայն համակողմանի գիտելիքներով, այլև կուսակցականությամբ և լեզվական բարձր կուլտուրայով:

Խոստովանենք, որ կյանքում հաճախ են խախտվում այս դիմորոշ նախապայմանները: Մեր օրերում անչափ դյուրին է դարձել համաշխարհային դասականին թարգմանելը առանց նրա մայրենի լեզուն գիտենալու, «գիտական» հրատապ թեմայով գիրք գրելը՝ նյութին նվազագույն չափով իսկ չտիրապետելով: Գաղտնիք չէ, որ երբ հրատարակչությունն այս կամ այն միտումով, անմշակ և ուղղակի արժեզուրկ ձեռագիր է ընդունում տպագրելու, հույս ունի այն կոնդիցիոն դարձնել պատասխանատու խմբագրի «հրաշագործությամբ»: Մի բան, որը, ըստ էության, բնավ չի հաջողվում, մանավանդ, որ մեր օրերի գրագետ և գրասեր ընթերցողի աչքից չես սքողի թե՛ հեղինակի և թե՛ թարգմանչի մտքի սահմանափակությունը:

Մեզ թվում է, երբ հրատարակչությունն ու պատասխանատու խմբագիրը հանձն են առնում ցածրորակ ձեռագիրը մի կերպ բարելավել, այդտեղից սկսվում է խոտանի օրինականացումը, որը միշտ էլ թանկ է նստում հրատարակչությանն ու նրա խմբագրին: Այստեղից է սկսվում ո՛չ միայն պատասխանատու խմբագրի, այլև հույժ պատասխանատու հրատարակչության գլխավոր խմբագրի եվայական գայթակղությունը: Հիրավի, պրակտիկան համոզում է, որ պիտանի գրքի հրատարակման նախապայմանը բանիմաց հեղինակ, բանիմաց թարգմանիչ և պատրաստված ու բարեխիղճ խմբագիր ունենալն է:

Հանրապետական մամուլը հաճախ է անդրադառնում տնտեսական կյանքի դրական ու բացասական երևույթներին: Բայց այն քիչ է լուսաբանում հոգևոր

տեղծություններ, ինչպես նաև տարբեր բնույթի... թեմաներ էին (?) մտահղացել: «...նա, ով անմիջաբար է դեմ առնում նման ծաղկման, միայն զարմանալ կարող է» (էջ 24), «Գերմանիան անտարբերության է թողնում թշնամական հարձակումների առաջ» (էջ 159), «Ի՞նչ մեծ և մաքուր մարդ է Մոլիերը... մաքուր մարդ... Նրա մեջ ոչ մի գաղտնիք և խեղաթյուրում չի եղել... Նա իշխել է իր ժամանակաշրջանի բերքերի վրա» (էջ 168), «թվում է, նա հիսունն անց է... ավելի նիհար, քան չաղ» (էջ 170), «Շեքսպիրը... գրել է ամբողջապես իր խառնվածքի մղումով... ինչպես ժամանակաշրջանը, այնպես էլ ժամանակաշրջանի բեմի ողղվածությունը ոչ մի պահանջ չեն ներկայացրել նրան» (էջ 177), «Գյոթեի համար ելք էր նաև, ինչպես արդեն վերևում ասացի, նրա ստեղծագործության համար անհրաժեշտ սիրահարվածության վիճակը» (էջ 675), «Նա... տարիքի տեսակետից այլևս երիտասարդ չի եղել» (էջ 665), «Գյոթեն պատասխանում է թեպետ կարճ, բայց չիակատար հեռուն տանող պարզությամբ» (էջ 669):

Հապա սովորական, առտնին դարձվածքների թարգմանությո՞ւնը... ասես թարգմանիչը, խմբագիրը բնավ չեն օգտագործել մնաք բարով, կամ մնաք բարյավ. գրքում տպված է «մնացեք բարև» (էջ 13), նուրախություն ինձը դարձել է «ի մեծ ուրախություն իմ» (էջ 42), այդուհանդերձը՝ «դրանով հանդերձ» (էջ 156), ցավոքը՝ «ի ցավ իմ» (էջ 376), մոռանալով ձեռնարկել բառի գոյությունը, թարգմանվել է «մեծ գործի ձեռք խփել» (էջ 15):

Ներելի չէ, երբ ջանքեր չեն գործադրվում ճիշտ, լավագույն ձևով թարգմանելու ստեղծագործությունների վերնագրերը. այսպես՝ Քահանայի նամակների փոխարեն, կարդում ենք Տերտերի նամակները (էջ 70), կամ Կանտի Զուտ բանականության քննադատությունը գործը, թարգմանված է Մաքուր բանականության քննությունը (էջ 382):

*Կկամենայինք, որ, ծանոթանալով այս ամենին, հրատարակչությունը, գիրքը տպագրության պատրաստող բաժինը, թարգմանիչ ընկ. Հակոբյանը, պատասխանատու խմբագիր ընկ. Գ. Ն. Հովհաննիսյանը և հրատարակչական խմբագիր ընկ. Գ. Վիրապյանը հանդեպ համապատասխան եզրակացություն, համակվեին կատարելիք գործի, մայրենի լեզվի նկատմամբ առավել ակնածանքով, ինչպես և ընթերցողին հուսախաբ չանող պատասխանատվությամբ:*

*Չենք կասկածում, որ «Գրական հուշարձանների» խմբագրական կոլեգիայի անդամները, ինչպես և պատասխանատու խմբագիրն իրենց գիտելիքներով, անշուշտ, ի վիճակի էին կանխելու այս ամենը: Բայց տարակուսելի է այն, թե պատասխանատու խմբագիրները խմբագրե՞լ են գիրքը, թե՞ հանդես են բերել սոսկ անպատասխանատվություն: Ծագում է մի հարց ևս. մինչև օրս նույն մատենաշարով հրապարակված գրքերն արդյո՞ք լավորակ են, արդյո՞ք ստուգված, խմբագրված են բանիմաց ընկերների կողմից: Մատենաշարի խմբագրությունը հաղորդում է, որ առաջիկայում լույս կտեսնեն մի շարք այլ խոշորագույն երկեր: Մաղթում ենք, որ դրանց խմբագրական աշխատանքները կազմակերպված լինեն պատշաճ մակարդակով:*

*Արդ, հակամետ ենք կարծելու, որ գրական արտադրանքի վերոհիշյալ անհանդուրժելի վիճակը հետևանք է այն բանի, որ հաճախ են խախտվում ստեղծագործական աշխատանքի որոշիչ նախադրյալները. խմբագիրներ ու թարգմանիչներ նշանակելիս կամ ընտրելիս հրատարակիչները հաշվի են առնում այլևայլ հատկանիշներ, բայց ոչ նրանց գիտելիքների մակարդակը:*

*Եթե ՀԳՄ հրատարակչությունն այդ նկատառումով բարեհաճի հիմնովին ստուգել Էքերմանի թարգմանությունը, համենայն դեպս չի կարող գոհ լինել առկա տխուր իրողությունից:*

*Անվիճելի է, որ թարգմանական վարպետությունը, բնատուր ձիրքից բացի, ձեռք է բերվում նաև տառապալի ու տևական աշխատափորձով, ամենօրյա ստեղծագործական որոնումներով, ուր ձախորդությունները ևս անխուսափելի են: Եվ, որպեսզի այդպես չլինի, նախքան Գյոթե, Շեքսպիր, Բալզակ և դասականների թարգմանության «ձեռք զարկելը», անհրաժեշտ է առնվազն երկու*



*տասնյակ տարի հանդես գալ սովորական մահկանացուների թարգմանությամբ և խմբագրությամբ:*

*Ուստի, քաղաքավարության կանոնները խախտած չենք լինի, եթե ասենք, որ Էքերմանի Զրույցները, անշուշտ, արժանի էին որևէ ակադեմիկոսի փաստական, այլ ոչ անվանական խմբագրությանը:*

*Հիրավի, այս երևույթները չէին լինի, եթե հրատարակչական գործի բոլոր մարզերում մարդիկ առաջնորդվեին ամենից առաջ և միմիայն պետականության, հարյուր հազարավոր ընթերցողների հոգևոր աշխարհի հարստացման շահերով: Եթե մեկը, չնայած իր տարիքին, շփոթում է գույնն ու «դյուզ»-ը, «օրինականությունն» ու օրինաչափությունը, կոկոնն ու «կոկոմ»-ը, ինքնանվաստացումն ու «ինքնաստորացում»-ը, մտահղացումն ու «մտահղացվում»-ը, հետաքրքրականն ու «հետաքրքիր»-ը, ավարտելն ու «ավարտվածության հասցնել»-ը, ընթանումը և «գնում»-ը, չպետք է «ձեռք խփի» որևէ թարգմանության:*

*Մենք շարունակում ենք մնալ այն համոզման, որ թարգմանությունն ու խմբագրությունն իրոք ստեղծարար գործունեություն են, որոշակի ձիրք ու հմտություն: Հետևաբար, այդ բնագավառները պետք է զերծ լինեն կիսագրագետներից, անկախ նրանց վերաբերյալ եղած շինծու համարումից և «գիտական» աստիճաններից:*

***

*Ինչպիսի՞ն են լինելու քաղաքներն ապագայում. ծավալվելու են դրանք բարձրությա՞մբ, երկարությա՞մբ, խորքո՞վ. երկնաքերներ, ցածրահարկեր, թե՞ ստորգետնյա, ստորջրյա բնակելի տներ. դրանց համեմատական հարմարավետության, արտաքին ու ներքին ձևավորման շատ հարցեր վաղուց ի վեր հետաքրքրել են մեր շինարար ժողովրդի ո՛չ միայն ճարտարապետներին ու կառուցողներին, այլև մասսայական ընթերցողին, կառուցվող, վերակառուցվող մեր մայրաքաղաքի, հանրապետության բնակչությանը: Եվ, ահա, մեր ընթերցողի համար լավ նվեր էր ճարտարապետության հայտնի քննադատ, քաղաքաշինության տեսաբան Միշել Ռագոնի* Ապագայի քաղաքները *հետաքրքրական գիրքը, ուր ներկայացված են աշխարհի տարբեր ճարտարապետ-քաղաքաշինարարների կարծիքները վերոհիշյալ հարցերի շուրջ:*

Սակայն այս հրապուրիչ գրքում ևս աչքի են զարնում նույնատիպ բազում սխալներ. օրինակ, ինչպե՞ս հասկանալ «ճարտարապետների տիպիկ տեսակետ» (էջ 10), «տրանսպորտային խոնվածք» (էջ 25), «ամենատանձարձակ ֆանտազիա» (էջ 36), «շինարարության աշխատանքների հեղափոխական պրոցես» (էջ 102):

Ահա և կապերի սխալ գործածության օրինակներ. «...ճարտարապետները... աշխատում են գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանի նոր քաղաքի գաղափարի վրա» (էջ 13), «...գաղափարը սովետական ճարտարապետների մեջ հղացավ դեռևս 20-ական թվականներին» (էջ 14), «մենք կողմնորոշվում ենք դեպի բնակելի տների գործարանային մասսայական պատրաստման կողմը» (էջ 197):

Այս թարգմանությունը ևս առատ է նման սխալներով. «...նախագիծը վերաբերում էր... ճարտարապետության ծրագրային ելույթներից առաջիններից թվին, որը արտապագանդում էր... կանաչապատումներ, երկաթբետոնի օգտագործում» (էջ 23), «...ամեն մի պրոբլեմ միշտ պետք է դիտարկել առավել ընդարձակ հեռավոր դիրքերից» (էջ 41), «ոչ մեծ չափերի գմբեթները հրաշալի կերպով հրատապ դեպքերում կարող են ծառայել իբրև բնակարան» (էջ 97), (էջ «...պաշտպանեց ֆանտազիա ցուցաբերելու ճարտարապետի իրավունքը» 30), «տուրիստական ճամբարները չխտացնելու տեղի ունեցող վերափոխությունից» (էջ 137):

Սխալներ կան նաև հատուկ անունների գրության մեջ: Այսպես, Մոնպառնաս (էջ 45— Մոնպառնաս), Նապոլիոն (էջ 48— Նապոլեոն), Բերնար

*ուր անհատական կամքը ազատ է ամեն կամայականության, նույնիսկ ամեն սանձարձակության։ Դա է գրականության դաշտը։ Այստեղ ահա կատարվել ու կատարվում են ամեն տեսակի ձևափոխություններ լեզվի վերաբերմամբ՝ սկսած ամենից ավելի գնահատելի ու քաջալերելի ձևերից, մինչև ամենաանպիտան սանձարձակությունները։ Այստեղ գրագետը ազատ է իր գրչի ծայրից դուրս վտարելու ամեն մի խժդժաբանություն, օտար կամ եկամուտ ձև, և ընտրելու, ընդունելու և ստեղծագործելու ամենից գեղեցիկ, ամենից ներդաշնակ բառերը, ամենից գունագեղ դարձվածքները, ամենից հարազատ ու նկարեն ոճերը։ Այստեղ գրագետը ազատ է նույնպես հնարելու բոլորովին այլանդակ, անհասկանալի, իրականության մեջ անգո և լեզվի ոգուն անհարազատ ձևեր» (*Լիակատար Քերականություն հայոց լեզվի, *էջ 439)։*

*Ճշմարիտ է, լեզուն ունի իր զարգացման օբյեկտիվ, մարդկանց կամքից անկախ օրինաչափությունները, մերժում է այն ամենը, ինչի կարիքը չունի, չի համապատասխանում իր ոգուն։ Սակայն տեսնել այս ամենը, ինչ փորձեցինք բացահայտել, և անտարբեր մնալ, անհանդուրժելի է մամուլի գործիչների համար։*

*Լեզվական կուլտուրայի մակարդակի բարձրացմանը մեծապես կնպաստեն գրական գեղեցիկ լեզվով գրված աշխատությունների, գեղարվեստական ծերի, հոդվածների արևերես հանելը, խրախուսումը, ինչպես և հոնորարային տարբերակված քաղաքականությունը։ Ինչպես ամենուր, այս ասպարեզում ևս թացն ու չորը պետք է զատվեն։*

*Գրականությանը, մամուլին, գրքին առնչվող բոլոր գործիչները երբեք չպետք է մոռանան ռուսական գիտության ռահվիրա Մ. Վ. Լոմոնոսովի խոսքերը.*

*«Եթե որևէ բան ճիշտ արտահայտել չենք կարողանում, մեղավորը ոչ թե մեր լեզուն է, այլ մենք, որ չենք տիրապետում դրան»։*

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ



## *Սոցիոլոգիական արժեքավոր ուսումնասիրություն*

Լույս է տեսել բժշկական գիտությունների
դոկտոր Ա. Պ. Հայրիյանի երրորդ գիրքը՝ նվիր-
ված գյուղական ընտանիքի սոցիոլոգիական
պրոբլեմներին*:

Մեր երկրում ընտանիքը, որպես հասարա-
կության սոցիալ-տնտեսական միավոր, մշտա-
պես գտնվում է պետության հոգատարության
և ուշադրության կենտրոնում: Սակայն, հանի-
րավի քիչ են գյուղական վայրերի ընտանիքի
զարգացումն ու ամրապնդումը, կենսապայմա-
ները բազմակողմանի վերլուծող սոցիոլոգիա-
կան ուսումնասիրությունները: Բժիշկ Հայրի-
յանը, սոցիոլոգիական իր այս ուսումնասիրու-
թյամբ, նպատակ է ունեցել բացահայտել ժա-
մանակակից գյուղական ընտանիքի կենսա-
պայմանների առավել բնորոշ գծերը, առանձ-
նահատկություններն ու զարգացման միտում-
ները:

Գյուղական ընտանիքի կուլտուր-կենցաղային
պայմանների համակողմանի ուսումնասիրու-
թյունը հեղինակը կատարել է Հայկական ՍՍՀ
գյուղական ութ շրջանների 45 բնակավայրե-
րում: Նա օգտագործել է հատկապես այդ նպա-
տակով մշակված՝ «Գյուղի բնակիչների ընտա-
նիքի սոցիոլոգիական ուսումնասիրության քար-
տը», որը պարունակում է 35 հիմնական և ավե-
լի քան 200 լրացուցիչ հարց: Ուսումնասիրվել
է 10.255 ընտանիք, որոնց շնչերի ընդհանուր
թիվը եղել է 58.506:

Վիճակագրական հարուստ նյութի հիման
վրա ի հայտ են բերվել և արտացոլվել ժամա-
նակակից գյուղական ընտանիքի կենսապայ-
մանների ամենատարբեր կողմերը: Այդ նյու-
թերը լրացված են ավելի քան 20 տարի գյու-
ղում աշխատած հեղինակի անձնական դիտում-
ներով:

Անկետայի առաջին մասի հարցերն ուղղված
են ընտանիքի գլխավորին և նպատակ ունեն
պարզել նրա տարիքը, սեռը, հասարակական
դիրքը, զբաղմունքը. կրթությունը, կրթության և
աշխատանքի համատեղումը, ընտանիքի կազ-
մը, ստացված լրագրերի ու ամսագրերի թիվը,
տվյալ վայրում նրա ապրելու տևողությունը: Մի
շարք հարցեր վերաբերում են երեխաների թը-
վին, նրանց՝ նախադպրոցական և դպրոցական
հաստատություններ հաճախելուն:

Հաջորդ մասի հարցերը վերաբերում են ըն-
տանիքի եկամտին, նրա թոշակառուների, ինչ-
պես և ընտանեկան բյուջեում իրենց դրամը
ներդնող անդամների թվին: Երրորդ մասում ա-
ռաջադրվում են բնակարանա-կենցաղային պայ-
մաններին վերաբերող բազմաթիվ հարցեր՝ բը-
նակարանի սենյակների թվի, ընտանիքի յուրա-
քանչյուր անդամին ընկնող տարածության չա-
փի, բնակարանային հարմարությունների, լո-
ղարանի, կամ գյուղում բաղնիքի առկայության,
գազի և այլնի մասին: Անկետայի այդ մասը
պարունակում է հարցեր, ընտանի կենդանինե-
րի և այդպիսիք չունենալու պատճառների, գոր-
ծածվող կենցաղային առարկաների վերաբեր-
յալ և այլն:

Անկետայի վերջում համապատասխան հար-
ցերով բացահայտվում են ընտանիքի անդամ-
ների վնասակար սովորույթները—ծխախոտի,
ալկոհոլային խմիչքների գործածությունը: Այ-
նուհետև հարցեր են տրվում այն մասին, թե
որտեղ են անցկացրել վերջին արձակուրդը, ինչ-
պիսիք են ընտանիքի անդամների փոխհարա-
բերությունները, հարցվողների կարծիքով ինչ է
անհրաժեշտ ընտանիքի կենսապայմանների
բարելավման համար: Նման հանգամանալի
հարցաթերթիկը հնարավորություն է ընձեռել
հեղինակին՝ հավաքելու ժամանակակից գյու-
ղական բնակչի կենսապայմանների վերաբեր-
յալ հարուստ և հետաքրքրական փաստական
նյութ:

Աշխատության մեջ որպես ուսումնասիրման
միավոր վերցված է ընտանիքը: Եվ դա հաս-
կանալի է. իբրև հասարակության առաջին սո-
ցիալական բջիջ, ընտանիքը սերտորեն առնչ-

* А. П. Айриян—Социологическое исследование семьи. «Айастан», 1974.

վում է նրա նյութական ու հոգևոր կյանքին, օբյեկտիվորեն արտահայտում է տվյալ հասարակության կուլտուր-կենցաղային և սոցիալ-տնտեսական պայմանների բնորոշ գծերը: Ժողոված փաստական նյութը մշակվել է էլեկտրոնային հաշվիչ մեքենայի միջոցով: Ստացված վիճակագրական տվյալները սիստեմավորվել են 15 ընդհանուր և 41 թեմատիկ աղյուսակներում: Գրքի եզրափակիչ մասում զետեղված այդ աղյուսակներն ամփոփում են հետաքրքրական, բազմակողմանի ինֆորմացիա: Ուսումնասիրվող խնդրի յուրաքանչյուր բաժնի համար կազմված տարբեր դիագրամները կոնկրետ ներկայացնում են վիճակագրական ողջ նյութը:

Աշխատությունն օգտակար է սոցիալ-հիգիենիստների և առողջապահության կազմակերպիչների, տարբեր բնագավառների գիտաշխատողների համար:

Ուսումնասիրությունների արդյունքները վկայում են գյուղական երիտասարդ տարիքի մտավորականության հեղինակության բարձրացման, ինչպես և երկար տարիների ընթացքում բազմազավակ և միջին թվով 5—6 հոգուց բաղկացած ընտանիքների բարձր տոկոսի պահպանման մասին: Ցուցահանված են ընտանիքի կայունությունը և Հայկական ՍՍՀ գյուղական վայրերում ամուսնալուծությունների աննշան տոկոսը: Ակնբախ է գյուղական բնակչի՝ կրթության, լուսավորության ձգտումը: Ինչպես ցույց է տալիս ուսումնասիրությունը, այժմ համարյա չկա մի ընտանիք, որ ամսագրեր ու լրագրեր չստանա: Գյուղական բնակչության ավելի քան 80 տոկոսն ունի հեռուստացույց և ռադիոընդունիչ, կենցաղում լայնորեն մուտք են գործել գազը, հեռախոսը: Գյուղական վայրերում բնակվող ընտանիքների 13,5 տոկոսն ունի սեփական ավտոմեքենա: Կոլտնտեսային գյուղերում համարյա բոլոր ընտանիքներն ապրում են նորակառույց սեփական տներում, որոնք հիմնականում համապատասխանում են ժամանակակից հիգիենիկ պահանջներին:

Գրքում բերված պաշտոնական տվյալները և դրանց վերլուծությունը վկայում են հանրապետության բնակչության առողջական վիճակի բարեփոխությունների, սովետական իշխանության տարիներին Հայկական ՍՍՀ-ի դեմոգրաֆիական պրոցեսներում կատարված դրական տեղաշարժերի մասին:

Փաստական հարուստ տվյալների բազմակողմանի վերլուծությամբ Ա. Պ. Հայրիյանը որոշակի եզրակացությունների է հանգում և անում մի շարք կոնկրետ առաջարկներ, որոնց նպատակն է գյուղական առողջապահության կազմակերպման հետագա կատարելագործումը և գյուղական բնակչության սանիտարա-հիգիենիկ ու բնակարանային պայմանների բարելավումը:

Ստացված տվյալների վերլուծությունից բխող եզրակացություններն արժեքավոր են ինչպես գիտական, այնպես էլ գործնական առումով և կարող են օգտագործվել առողջապահական մարմինների ու հաստատությունների, տարբեր բնագավառների գիտաշխատողներիր կողմից, ինչպես և ժամանակակից գյուղի զարգացման սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանները կազմելիս:

Ըստ արժանվույն գնահատելով Հայրիյանի աշխատությունը՝ հարկավոր է առանձնապես նշել ուսումնասիրության մեթոդիկայի ինքնատիպությունը և զննությունների մեծածավալությունը, որոնք ապահովում են ուսումնասիրության արդյունքների ու եզրահանգումների հավաստիությունը:

«Հայաստան» հրատարակչությունը, առողջապահության առաջին ժողկոմ Ն. Ա. Սեմաշկոյի ծննդյան 100-ամյակի առթիվ լույս ընծայելով ճաշակով ձևավորված և պոլիգրաֆիական պատշաճ մակարդակով կատարված այս աշխատությունը, լավ նվեր է մատուցել մեր բժշկական հասարակայնությանը: Կարծում ենք, որ այս մենագրությունը կարևոր աղբյուր կհանդիսանա նման կարգի այլ ուսումնասիրությունների համար:

Ե. Ա. ԼՈԳԻՆՈՎԱ
Բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
Մոսկվա

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԽՐՈՆԻԿԱ

**ՇԱՄՇԱԴԻՆԻ ԿՈՒՍՇՐՋԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՆ** մշակեց կազմակերպական և պրոպագանդիստական աշխատանքի միջոցառումներ՝ կապված ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման մասին» որոշման կենսագործման հետ:

Շրջսովետի գործկոմին հանձնարարված է մշակել և ներկայացնել շրջանի էկոնոմիկայի զարգացման 1976—1980 թվականների նախագիծը: Շրջանի ժողովրդական տնտեսության զարգացմանն առնչվող հարցերը նախատեսված է քննարկել կուսակցական-տնտեսական ակտիվի առաջիկա ժողովում:

Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին առաջադրանք է տրված լայն գործունեություն ծավալել կոմունիստների և անկուսակցականների շրջանում, նրանց բացատրել այդ որոշման դերն ու նշանակությունը: Այդ նպատակով կազմակերպվելու են դասախոսություններ, տեսական կոնֆերանսներ, զրույցներ:

**ՀԿԿ ԷՋՄԻԱԾՆԻ ՇՐՋԿՈՄԻ** բյուրոն քննարկեց հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարի և աթեիստական պրոպագանդայի մակարդակի բարձրացման վերաբերյալ հարցը: Բյուրոն արժեքավորելով այդ ասպարեզում կատարված դրական աշխատանքը և բացահայտելով թերությունները, մշակեց գործնական միջոցառումներ:

Հանձնարարվել է կուսկազմակերպություններին՝ ուժեղացնել պրոպագանդիստական աշխատանքը, բարձրացնել կարդացվող զեկուցումների և դասախոսությունների մակարդակը: Շրջկոմի բյուրոն կոմերիտմիության շրջկոմին, ժողկրթբաժնին, «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքին, կինոցանցի դիրեկցիային պարտավորեցրել է յուրաքանչյուր շաբաթ և կիրակի օրը անցկացնել համատեղ միջոցառումներ կուլտուրայի և հանգստի քաղաքային այգում, ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ՝ ցուցադրական ագիտացիան բարելավելու համար:

**ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ՔԱՂԿՈՄԻ** բյուրոն հաստատեց միջոցառումների պլան՝ ՀԿԿ Կենտկոմի «Արտադրական կարողությունների շինարարության ժամկետները կրճատելու, գործարկումն արագացնելու, նոր կարողությունների յուրացման և եղածների լավագույն օգտագործման համար սոցիալիստական մրցություն ծավալելու ասպարեզում Հայկական ՍՍՀ թեթև, սննդի, տեղական, մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության և ձկնատնտեսության շինարարական կազմակերպությունների ու ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնության մասին» որոշման կենսագործման համար:

Քաղկոմի բյուրոն նշեց, որ «Լենշին» տրեստը, Մասիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը, գուլպայի ֆաբրիկան, հաշվի առնելով իրենց հնարավորություններն ու ներքին արտադրական ռեզերվները, ընդունել են լրացուցիչ պարտավորություններ՝ 1975 թ. արտադրական նոր կարողությունները կրճատված ժամկետներում կառուցելու և շահագործման հանձնելու, դրանք լավագույն ձևով օգտագործելու վերաբերյալ: «Լենշին» տրեստը պարտավորվել է կոշիկի ֆաբրիկայում ժամկետից մեկ ու կես ամիս շուտ գործարկել 1 մլն զույգ կոշիկի, գարեջրի-ածիկի գործարանում 3 ամիս շուտ՝ 534 դեկալիտր

ոչ-ալկոհոլային խմիչքների արտադրական հզորությամբ նոր կարողությունները, կատարել թեթև և սննդի արդյունաբերության միհիստրությունների փոխանցիկ օբյեկտների շինարարության տարեկան պլանը և պլանից դուրս իրականացնել 100 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք:

Բյուրոն հանձնարարեց քաղաքի կառույցների ղեկավարներին ու կուսկազմակերպություններին՝ ՀԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման նպատակով մշակել և իրականացնել գործնական միջոցառումներ սոցիալիստական մրցությունը ծավալելու համար, մրցողների ուշադրությունը կենտրոնացնել արտադրության ներքին ռեզերվների հայտաբերման և գործադրման վրա:

«Լենշին» տրեստի ղեկավարներին հանձնարարվել է ձեռնարկությունների հետ համատեղ մշակել արտադրական կարողությունների շինարարության և գործարկման ժամկետների կրճատման գրաֆիկ:

ՀԼԿԵՄ Լենինականի քաղկոմը նախատեսել է կոչ ուղղել երիտասարդությանը՝ թեթև արդյունաբերության կառույցներում ու ձեռնարկություններում աշխատելու համար:

ԿՆՈՋ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐՎԱ անցկացման կապակցությամբ ՀԿԿ Թումանյանի շրջկոմի բյուրոն ընդունեց որոշում: Նախատեսվում է կազմակերպել կնոջ միջազգային տարվան նվիրված շրջանային ու քաղաքային ակտիվի հանդիսավոր ժողովներ, տնտեսություններում զբաղված կանանց աշխատանքային, կենցաղի և հանգստի պայմանների ստուգատես, «լավագույն մասնագետ» նշանաբանով կոնկուրսներ և այլն:

Կուլտուրայի տներում, ակումբներում ու գրադարաններում կկարդացվեն կնոջ միջազգային տարվան նվիրված զեկուցումներ ու դասախոսություններ, կանցկացվեն թեմատիկ երեկոներ, հանդիպումներ անվանի կանանց հետ:

Կոմերիտմիության շրջկոմին, շրջանային և քաղաքային սովետների գործկոմների ժողկրթության բաժիններին հանձնարարված է կոմերիտական կազմակերպությունների, պիոներական դրուժինայի միջոցով շեֆական օգնություն ցույց տալ հայրենական պատերազմի մասնակից կանանց, նրանց շրջապատել հոգատարությամբ և ուշադրությամբ:

Շրջանում պետք է անցկացվեն նաև կինոփառատոն՝ «Նվիրվում է հայրենիքի դուստրերին» նշանաբանով, կանանց սպորտային մրցումներ և այլ միջոցառումներ:

ՀԿԿ ՍՈՎԵՏԱԿԱՆԻ ՇՐՋԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՆ քննարկեց՝ «ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» որոշման առնչությամբ քննադատության և ինքնաքննադատության զարգացման համար «Արդկապ» գործարանի կուսբյուրոյի կատարած աշխատանքի մասին» հարցը:

Բյուրոն նշեց, որ գործարանի կուսկազմակերպության ջանքերի շնորհիվ նկատելիորեն աճել են կոմունիստների ակտիվությունը և փոխադարձ պահանջկոտությունը: Կուսբյուրոյի կազմակերպական և դաստիարակչական ողջ աշխատանքը ուղղված է իններորդ հնգամյա պլանների և ստանձնած պարտավորությունների անթերի կատարմանը:

Որոշմամբ միաժամանակ նշվում է, որ կուսբյուրոն դեռևս հետևողականորեն չի պայքարում եղած թերությունների վերացման, արտադրության արդյունավետության բարձրացման, ռեզերվների լիովին օգտագործման համար: Կոմունիստները հաճախ հանդես են գալիս արդարացի քննադատությամբ, մտցնում գործնական առաջարկություններ, որոնց հիման վրա ընդունվում են համապատասխան որոշումներ, բայց թույլ հսկողության հետևանքով դրանց մի մասը չի կենսագործվում:

Անբավարար է կիրառվում հաշվետվությունների, կանոնադրական պարտականությունների և հանձնարարությունների կատարման վերաբերյալ ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների հաղորդումների քննարկման մեթոդը, անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում հասարակական կազմակերպությունների աշխատանքին:

Կուսբյուրոն իր գործունեությունը լիովին չի վերակառուցել կուսակցության XXIV համագումարի, ՍՄԿԿ պլենումների պահանջներին համապատասխան: Տեղ գտած թերությունների վերացման, կադրերի դաստիարակության գործում վատ է օգտագործում կուսակցության փորձված մեթոդը՝ քննադատությունն ու ինքնաքննադատությունը:

Բացահայտած թերությունների վերացման նպատակով շրջկոմի բյուրոն մշակել է կոնկրետ միջոցառումներ:



«ՇՐՋԱՆԻ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ կազմակերպություններում կոմերիտական փաստաթղթերի փոխանակության ընթացքի մասին»— այսպիսի հարց է քննարկել ՀԿԿ Ղափանի շրջկոմի բյուրոն:

Բյուրոն նշել է, որ կոմերիտական փաստաթղթերի փոխանակությունը հիմնականում անցնում է երիտասարդության աշխատանքային և քաղաքական ակտիվության պայմաններում, ՀամԼԿԵՄ Կենտկոմի պլենումի պահանջների ոգով: Փոխանակությունը նպաստում է կոմերիտական աշխատանքի ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործմանը, կոմերիտական կազմակերպությունների ամրապնդմանը, կոմերիտականների ակտիվության բարձրացմանը, ՀամԼԿԵՄ XVII համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում առաջադրված խնդիրների հաջող իրականացմանը:

Նոր կոմերիտական տոմսերը առաջինը ստանալու պատիվը վերապահվել է արտադրության առաջավորներին:

Կուսշրջկոմի բյուրոն հանձնարարել է ՀԼԿԵՄ Ղափանի շրջկոմին՝ վերացնել կոմերիտական տոմսերի փոխանակության գործում տեղ գտած թերությունները:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ Սպիտակի շրջկոմի բյուրոն հերթական նիստում մշակեց միջոցառումներ՝ ՍՄԿԿ XXV համագումարը արժանավայել դիմավորելու համար:

Բյուրոն նշեց, որ արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների շատ կոլեկտիվներ հանդես են գալիս համագումարին նվիրված նախաձեռնություններով: Դրանց թվում են Սպիտակի գլխավորող պանրագործարանը, Մեծ Պարնի գյուղի կոլտնտեսությունը, որոնք, դիմելով շրջանի աշխատավորությանը, կոչ են արել ի պատիվ կուսակցության առաջիկա համագումարի ստանձնել բարձր պարտավորություններ և ընդունել հանդիպական պլաններ, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, բարելավել թողարկվող արտադրանքի որակը:

Կուսշրջկոմի բյուրոյի մշակած միջոցառումներում մասնավորապես նախատեսվում է պետությանը պլանից դուրս վաճառել 10 հազար ցենտներ շաքարի ճակնդեղ, կերի բազայի ամրապնդման նպատակով կուտակել 16.500 տոննա խոտ, 20 հազար տոննա սիլոս, կատարել արտապլանային այլ աշխատանքներ:

ՂԱՓԱՆԻ ԿՈՒՍՇՐՋԿՈՄԻ բյուրոն որոշում ընդունեց Ղափան, Քաջարան քաղաքներում, շրջանի մյուս խոշոր բնակավայրերում կարգուկանոնի հենակետեր ստեղծելու մասին:

Այդ կապակցությամբ աշխատավորների դեպուտատների Ղափանի շրջանային ու քաղաքային սովետների գործադիր կոմիտեներին հանձնարարվել է մինչև 1976 թ. հունվարի 1-ը ավարտել հենակետերի ձևավորումը, ուշադրության կենտրոնում պահել նրանց գործունեությունը:

Շրջանային դատախազին և միլիցիայի բաժնին հանձնարարվել է մեթոդական օգնություն ցույց տալ կարգուկանոնի հենակետերին:

Կուսշրջկոմը պարտավորեցրել է «Պղնձի համար» թերթի և «Ղափանյան կյանք» ռադիոհաղորդումների խմբագրություններին՝ լայնորեն լուսաբանել հենակետերի գործունեությունը, մասսաների մասնակցությունը, պրոպագանդել նրանց աշխատանքի դրական փորձը:

«ԳՈՐԻՍԻ ՇՐՋԱՆԻ ժողովրդական համալսարանում նոր ուսումնական տարվա նախապատրաստման մասին» հարցը քննարկվեց ՀԿԿ Գորիսի շրջկոմի բյուրոյում:

Կուսշրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնին, «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքին, սկզբնական կուսկազմակերպություններին հանձնարարվել է ուժեղացնել ժողովրդական համալսարանին ցույց տրվող օգնությունը, բարձրացնել անցկացվող պարապմունքների գաղափարա-տեսական մակարդակը: Շրջկոմի բյուրոյի նիստերում պարբերաբար կքննարկվեն համալսարանի գործունեությանն առնչվող հարցեր, հաճախակի կկազմակերպվեն ունկնդիրների հանդիպումներ արտադրության առաջավորների, շրջանի կուսակցական, սովետական և

տնտեսական ղեկավար աշխատողների հետ:

Որոշմամբ նախատեսվել է ընդլայնել պարապմունքների թեմատիկան՝ նվիրված աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով երիտասարդության դաստիարակությանը:

ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ Երևան քաղաքի Շահումյանի շրջանի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը, որը քննարկեց հնգամյակի եզրափակիչ տարվա առաջին կիսամյակի սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքների և ՍՄԿԿ XXV համագումարի պատվին ստանձնած լրացուցիչ պարտավորությունների կատարումն ապահովող միջոցառումների մասին հարցը:

Ժողովի ընդունած որոշման մեջ նշվում է, որ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները արտադրանքի իրացման կիսամյա պլանը կատարել են 102,8 տոկոսով, պլանից դուրս իրացնելով 4,2 մլն ռուբլու արտադրանք:

Կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը կոչով դիմել է շրջանի աշխատավորությանը՝ տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած նոր հաջողություններով դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը:

Ակտիվի ժողովը մշակեց կոնկրետ միջոցառումներ՝ թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման, արտադրական հզորությունների լրիվ օգտագործման, էներգետիկ և վառելիքային ռեսուրսների տնտեսման համար:

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՅԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ս. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04107* *Պատվեր 1827* *Թղթի չափսը 70×108 1/16:* *Տիրաժ՝ 13600* *Գինը՝ 20 կ.:*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:* *Ստորագրված է տպագրության 18/VIII 1975*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*



# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՄԱՐՔՍ և Ֆ. ԷՆԳԵԼՍ— Կոմունիստական կուսակցության մանիֆեստը: *Մ.*, «Политиздат», *1975:*

Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ, Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կրոնի մասին *(ժողովածու)*: *Մ.*, «Политиздат», *1975:*

Ֆ. ԷՆԳԵԼՍ— Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը: *Մ.*, «Политиздат», *1975:*

Ֆ. ԷՆԳԵԼՍ— Բնության դիալեկտիկա: *Մ.*, «Политиздат», *1975:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ: *Մ.*, «Политиздат», *1975:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մարքսիզմի երեք աղբյուրները և երեք բաղկացուցիչ մասերը: Կարլ Մարքս: *Մ.*, «Политиздат», *1975:*

Լենինյան ժողովածու XXXVIII: *Մ.*, «Политиздат», *1975:*

Վ. Ի. Լենինը և համառուսական արտակարգ հանձնաժողովը. *փաստաթղթերի ժողովածու (1917—1922 թթ.)*: *Մ.*, «Политиздат», *1975:*

Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն աշխատավորների կենսամակարդակի բարձրացման մասին. *փաստաթղթեր և նյութեր*: *Մ.*, «Политиздат», *1975:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Սովետական ժողովրդի մեծ սխրանքը: *«Հայաստան» հրատ., 1975:*

ՀՈՎՀ. ԲԱՂՐԱՄՅԱՆ— Այսպես է սկսվել պատերազմը: *«Հայաստան» հրատ., 1975:*

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Սովետական Միության նավատորմի ծովակալ Հովհաննես Իսակով: *«Հայաստան» հրատ., 1975:*

Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Հայաստանի կոմկուսի գործունեությունը բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ: *Ե., «Համալս.» հրատ., 1975:*

Հ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ— Արևմտահայերի բռնագաղթը և սփյուռքահայերի հայրենադարձությունը Սովետական Հայաստան: *Ե., «Համալս.» հրատ., 1975:*

Փ. ՀՈՒՐԻԽԱՆՅԱՆ— Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության զարգացումը Սովետական Հայաստանում՝ 50 տարում: *Ե., «Համալս.» հրատ., 1975:*

Է. Ա. ԻՎԱՆՅԱՆ— Սպիտակ տունը. պրեզիդենտները և քաղաքականությունը: *Մ.*, «Политиздат», *1975:*

Ա. Ի. ԱՌՆՈԼԴՈՎ— Զարգացած սոցիալիզմի կուլտուրան: *Մ.*, «Политиздат», *1975:*

Ա. Ն. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ— Միասնական շարքերում: *«Հայաստան» հրատ., 1975:*

Հ. ԱՋԱՏՅԱՆ— Դանուշ Շահվերդյան: *«Հայաստան» հրատ., 1975:*

Լ. ԲԱԴԱԼՅԱՆ— Տնտհաշվարկը և արդյունաբերական ձեռնարկության շահույթի պլանավորումն ու օգտագործումը: *«Հայաստան» հրատ., 1975:*

Գիտական կոմունիզմ: *«Հայաստան» հրատ., 1975:*

Հ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ— Տնտեսական շահերը սոցիալիզմի ժամանակ: *Ե., «Համալս» հրատ., 1975:*

Վ. ՂՈՒԿԱՍՅԱՆ— Պոլսահայ մամուլի և հրապարակախոսության սկզբնավորումը *(1832—1853): Ե., ԳԱ հրատ., 1975:*

Հայրենագիտական ժողովածու *(Հանրապետական հայրենագիտական առաջին կոնֆերանսի նյութերը): Ե., ԳԱ հրատ., 1975:*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՍԲԵՍՏԵ ՄԱԳԻՍՏՐԱԼ ԳԱԶԻ ՀԱՄԱՐ

*Լեհաստանում, գազի արդյունաբերության կենտրոնական լաբորատորիայի աշխատակից, պրոֆեսոր Մ. Պալենդզսկին այժմ մշակում է ասբեստից ու ցեմենտից գազի խողովակների արտադրության տեխնոլոգիական գիծ։ Նման խողովակները կոնսերվացման կարիք չունեն, չեն քայքայվում, չեն աղտոտվում օքսիդային նստվածքներով։*

*Ասբեստե խողովակների առաջին շարքն արդեն փորձարկվում է Վարշավայում։*

## ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ՊՐԵՊԱՐԱՏՆԵՐ

*Ռազգրադսկի անտիբիոտիկների գործարանն սկսել է թողարկել կորտիմիցինի կրեմ, որը լավ արդյունք է տալիս վարակիչ էկզեմաների, պիոդերմի, ալերգիկ դերմատիտների բուժման գործում։ Լավ արդյունք է տվել էրիտրան անտիբիոտիկը, որի սրսկումը բուժում է խոշոր եղջերավոր անասունների և թռչունների շատ հիվանդություններ։*

## ՏԻՏԱՆԻ ԱՊԱԿԻ

*Քիմիկոսները տիտանը գնահատում են այն բանի համար, որ սինթեզի ագրեգատներին հաղորդում է մեծ կոռոզիադիմացկունություն։*

*Վերջերս ԳՖՀ-ի օպտիկական արդյունաբերության մասնագետները իբրև ապակու բաղադրամաս, այլ մետաղների փոխարեն, օգտագործել են տիտանը։*

*Փորձը լիովին հաջողվել է. ստացվել են առաջին լինզերը— փոքր տեսակարար կշռով, ավելի ամուր ու դժվարությամբ կոտրվող։*

## ՄԱՆՐԱԹԵԼ՝ ՋԱՐԴՎԱԾ ՇՇԵՐԻՑ

*Աղբարկղերի պարունակության զգալի մասը ջարդված ապակի է, հնացած ամանեղեն։ Մինչև վերջերս Անգլիայում այդ բարիքը թափվում էր հողում։ Այժմ արդեն գործածվում է ջարդած ապակին անմիջականորեն ապակե մանրաթելի վերածող առաջին սարքը։*

*Իհարկե, ապակե ջարդոնից ստացված մանրաթելը արտաքուստ այնքան գեղեցիկ չէ, ինչպես ավանդական հումքով ստացվածը, բայց շատ հարմար է խողովակաշարերի ջերմամեկուսացման համար։ Այդ մանրաթելը սովորականից էժան է և առավել դիմացկուն։*

## ԱՄԱՆԵՂԵՆ՝ ԹՂԹԻՑ

*Ֆիննական «Կոնվերտա» ֆիրման մասսայական օգտագործման համար պատրաստել է սեղանի թղթե սպասք— բաժակներ, ամանեղեն։ Գործածելուց հետո դրանք այլևս չեն լվանում, վառում են, այդպիսով խնայելով զգալի աշխատանք. ավելորդ են դառնում մեծ պահեստաշենքերը, պակասում են համաճարակների տարածման հնարավորությունները։*

## ՓԱՐԻԶՈՒՄ ՀՐԱԲՈՒԽՆԵՐ ՉԿԱՆ

*Փարիզի 42 հազար բնակչություն ունեցող արվարձաններից մեկը ջեռուցվում է ստորգետնյա ջերմությամբ։ 1.600 մետր խորությամբ հորատանցքը 71°C ջերմությամբ աղաջուր է մատակարարում այդ շրջանի ջեռուցման սիստեմին։ Անցնելով ջերմափոխիչների միջով, ստորերկրյա տաք ջուրը տաքացնում է ջուրը մինչև 65°C. այնուհետև, անցնելով հատակին տեղադրված խողովակներով, տաքացնում է շենքը և ապա, սառչելով, կրկին վերադառնում երկրի խորքը։*

## «ՀԱՎԵՐԺԱԿԱՆ» ԼԱՊՏԵՐ

*ԱՄՆ-ում թողարկվել է գրպանի լապտերիկ, որի մարտկոցները փոխելու կամ լիցքավորելու հարկ չի լինում։ Ակումուլյատորը լիցքավորվում է արևային փոքրիկ մարտկոցից, որի օգտակար գործողության գործակիցն այնքան մեծ է, որ բավարար քանակությամբ էլեկտրականություն է մատակարարում նույնիսկ ամպամած օրերին։*